ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 7 1964

ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ

# ՄԱՄԻԿՈՆՅԱՆՆԵՐԻ ՋՐՈՒՅՑԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԱՂԲՅՈՒՐԸ ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

## (Բուզանդարանի կորած դպրությունների կապակցությամբ)

*Մծուրն քաղաքում հայտնաբերված մի հունարեն արձանագրություն պարունակել է հայոց հին թագավորների ժամանակագրությունը և ունեցել է հետևյալ խորագիրը. «Ես, Ագաթանգեղոս դպիր, գրեցի ի վերայ արձանիս այսորիկ ինով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ՝ առեալ ի դիւանէ արքունի»*[1]*:*

*Արձանագրության խորագիրը պահպանվել է XI դարի պատմիչ Հովհան Տարոնացու Բագրատունյաց պատմությունից մնացած հատվածում*[2]*, որտեղ, հավանաբար արձանագրության հիման վրա, բերված է առաջին հայ թագավորաց ցանկը: Այստեղ հանդիպում է Տրդատ անունով ընդամենը մեկ հայ թագավոր՝ Խոսրովի որդին, ուստի և նրա հրամանով արձանագրությունը կազմող հեղինակը՝ Ագաթանգեղոսը մեզ ներկայանում է որպես երրորդ դարի հեղինակ:*

*Եթե ընդունենք, որ Մարաբասյան մատյանում վկայակոչված արձանագրությունը վավերական սկզբնաղբյուր է՝ կնշանակի դա մեզ հայտնի ամենահին գրավոր հիշատակարանն է, որ վերաբերել է զուտ հայոց պատմությանը: Այս տրամաբանական եզրակացությանն է եկել դեռ հին դարերում հայ մեծ պատմաբան-գիտնական Մովսես Խորենացին, որը Մարաբասյան մատյանը նշել է ի շարս իր օգտագործած ամենահին սկզբնաղբյուրների: Այսպիսով անկախ արձանագրության վավերականությունից, Ագաթանգեղոսը մեզ ներկայանում է որպես հայոց պատմության ամենահին շրջանի ժամանակագիր:*

---

1 *Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, բաղդատութեամբ ձեռագրաց, հանդերձ առաջաբանիւ եւ ծանօթութեամբք ի ձեռն Ստ. Մալխասեանց, Երևան, 1939, էջ 2: Հետագայում՝ ՍՊ:*

2 *«Հովհան Տարոնացու Պատմությունից մնացած հատված» ասելով սույն հոդվածում մենք նկատի ունենք Սեբեոսին վերագրվող Պատմության առաջին չորս գլուխները (էջ 1—22), որոնք նախկին հրատարակություններում կոչվել են Ա և Բ դպրություններ և մեծ մասամբ տպված են որպես «Սեբեոսի Պատմությանը» սխալմամբ միացված հատված, որի հեղինակը բանասիրության մեջ կոչվել է Անանուն: Մատենադարանի «Բանբեր»-ի № 6-ում (էջ 50—51) մենք ցույց ենք տվել, որ այս հատվածը մնացորդ է XI դարի պատմիչ Հովհան Տարոնացու երկից, որտեղ հեղինակը ի շարս ուրիշ սկզբնաղբյուրների (Մովսես Խորենացի, «Սեբեոսի Պատմություն», Զենոբ, Ստեփանոս, Ասողիկ և այլն) օգտագործած է եղել իր ձեռքի տակ գտնված և մեզ չհասած մի շատ արժեքավոր սկզբնաղբյուր (որի կազմում է գտնվել նաև Մամիկոնյանների զրույցը):*

Ագաթանգեղոսի արձանագրության վավերականությունը դեռ կարոտ է ստուգման, բայց որ արձանագրության մասին հաղորդող մարաբասյան սկզբնաղբյուրը գրվել է Մովսես Խորենացու «Հայոց պատմություն»-ից առաջ՝ դա մի փաստ է, որն ուղղակի կամ անուղղակի կերպով նշել են ինչպես հայ, այնպես էլ օտար բազմաթիվ գիտնականներ՝ Ք. Պատկանյան[3], Ա. Գուտշմիդ[4], Կարիեր[5], Ֆետտեր[6], Մառ[7], Գր. Խալաթյանց[8], Ն. Ադոնց[9], Ա. Մատիկյան[10], Ն. Ակինյան[11], Ստ. Մալխասյանց[12], Մ. Աբեղյան[13], Հ. Մանանդյան[14] և ուրիշներ։

Հովհան Տարոնացու հատվածում հայ առաջին թագավորների ժամանակագրությունը պարունակող արձանագրությունից բացի պահպանվել են Հայաստանի նախնական պատմության վերաբերող մի քանի այլ ավանդություններ, որոնց շարքում է նաև Մամիկոնյանների ծագման մասին զրույցը։ Ուսումնասիրությունը պարզում է, որ Մարաբասյան սկզբնաղբյուրում այս զրույցը նույնպես գրանցված է եղել Մծուրնի արձանագրության հեղինակ Ագաթանգեղոսի անվամբ և այդպիսով հանդիսանում է Մամիկոնյանների զրույցի ամենահին գրանցումը մեր մատենագրության մեջ։ Միաժամանակ պարզվում է, որ զրույցը Հովհան Տարոնացին ընդօրինակել է V դարում գրված և մեզ չհասած մի երկից։

Ն. Ադոնցը[15] և Հ. Մանանդյանը[16] արդեն նշել են, որ Մովսես Խորենացին ծանոթ է եղել «Սեբեոսի Պատմությանը» միացած հատվածում շարադրված Մամիկոնյանների զրույցին։ Սակայն նրանք հատվածը բուն Պատմության հետ միասին համարել են VII դարի հեղինակ Սեբեոսի գործ, ուստի և զրույցի

---

3 К. Патканян, Ванские надписи и значение их для истории Передней Азии, С-Пб, 1881.

4 A. Gutschmid, Über die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren. Berichte d. Kön. Sächsischen Gesellsch. d. Wissensch. zu Leipzig. Phil.-hist. Klasse, Bd. XXIII, 1876.

5 A. Carriere, Moïse de Khoren et les généalogies Patriarcales, Paris, 1891.

6 P. Vetter, Das Buch des Mar-Abas von Nisibis. Festgruss Dr. Prof. Rud. v. Roth zum 50 Jährigen Doktorjubiläum, Stuttgart, 1893, стр. 88.

7 Н. Я. Марр, О Начальной истории Армении Анонима.—„Виз. временник“, т. I, вып. 2, 1894, նաև К критике истории Моисея Хоренского, -„Виз. врем.“, 1898, № 1—2.

8 Гр. Халатянц, Армянский эпос в Истории Армении М. Хоренского, Москва, 1895, Аноним как поздный апокриф, стр. 58—105.

9 Н. Адонц, Начальная история Армении у Себеоса в отношениях к трудам Моисея Хоренского и Фавста Византийского.—„Виз. временник“, 1901, т. VIII, вып. 1—2, նաև՝ N. Adontz, Sur la date de l'Histoire de l'Arménie de Moïse de Chorène,—„Byzontion, V. XI, Bruxelles, 1936.

10 Ա. Մատիկյան, Անանունը կամ Կեղծ-Սեբեոս, Վիեննա, 1913։

11 Ն. Ակինյան, Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց և իւր Պատմութիւն ի Հերակլն— «Ազգ. մատենադարան», ՃԴ, Վիեննա, 1924։

12 Ստ. Մալխասյանց, ՍեՊ, էջ 164։

13 Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ. Վաղարշապատ, 1899, էջ 389—400, 422—426 և այլուր

14 Я. А. Манандян, Начальная история Армении Мар-Абаса (к вопросу об источниках Себеоса, Моисея Хоренского и Прокопия Кесарийского—„Палестинский сборник“, вып. 2 (64—65), 1956.

15 Н. Адонц, նշված աշխ., էջ 26, 90—91, 92։

16 Я. А. Манандян, նշվ. աշխ., էջ 80։

*գրանցման ժամանակը ընդունել են VII դարը, իսկ Խորենացուն տեղաշարժել են հինգերորդ դարից դեպի ութերորդ-իններորդ դարերը։*

*Զրույցը Սեբեոսին են վերագրել նաև Ն. Ակինյանը*[17]*, Ստ. Մալխասյանցը*[18]*, Մ. Աբեղյանը*[19] *և ուրիշներ։*

*Թյուրիմացությունը ծագել է աղճատված ձեռագրից, որտեղ զրույցը սխալմամբ ընդօրինակված է VII դարում ստեղծված «Սեբեոսի Պատմության» կազմում, որպես նրա բաղկացուցիչ մաս։ Այստեղ հեղինակն առաջին դեմքով հայտնում է, որ ինքը զրույցը լսել է Ճենաստանից եկած մի դեսպանից։ Այս հեղինակին նույնացնելով Սեբեոսի հետ, բանասերները բնականաբար գրանցման ժամանակը պետք է համարեին VII դարը։*

*Թյուրիմացությունը պարզելու և զրույցի իրական հեղինակը բացահայտելու համար նախ դիմենք բնագրին։*

*Մամիկոնյանների զրույցն սկսող նախադասությունը մեզ հասած բնագրում սկզբից թերի է և սկսվում է մի կիսատ բառով, որին հաջորդող բառերը նույնպես աղճատված են և անհասկանալի։ Այսպես.* «-ագրէ զՄամիկոնէիցն սակս ազգաց զնեղութիւնն»[20]։

*Բանասերները փորձել են զանազան բացատրություններ տալ այս նախադասությանը, բայց բնագիրը վերականգնել չի հաջողվել։ Ք. Պատկանյանը թարգմանել է նախադասության ենթադրյալ իմաստը՝* «скажем несколько слов о роде князей Мамиконян» *և ծանոթագրել է. «Բնագրում այս տեղը բոլորովին անհասկանալի է»*[21]*։ Ֆրանսերեն թարգմանության հեղինակ Ֆ. Մակլերը, հավանաբար հետևելով Ք. Պատկանյանին, թարգմանել է.* «Nous allons parler maintenant de l'origine des Mamikoniens»[22] *(«Այժմ խոսենք Մամիկոնյանների ծագման մասին»)։ Հ. Ն. Ակինյանը բոլորովին այլ բովանդակություն է վերագրել նախադասությանը, վերծանելով այսպես. «Օրինագրէ զՄամիկոնէիցն տան սպարապետութիւն»*[23]*։ Ստ. Մալխասյանցը թարգմանել է՝* «О Мамиконянах, про народы, бедствия»[24]։

*Ինչպես տեսնում ենք, ենթադրությունները կամ բնագրից հեռացել են,*

---

17 *Ն. Ակինյան, «Հանդէս ամսօրեայ», 1911, էջ 528, ծանոթություն։*

18 *Ստ. Մալխասյանց, ՍեՊ, էջ Զ, Է։*

19 *Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք առաջին, Երևան, 1944, էջ 388։*

20 *Տե՛ս ՍեՊ, էջ 12, տող 16։ Այստեղ և մյուս տպագիր բնագրերում կիսատ բառը սխալմամբ տպված է «-ագրէ»։ Մենք սրբագրում ենք՝ «-աղրէ», օգտվելով «Սեբեոսի Պատմության» հնագույն ձեռագրից (Մաշտոցի անվան Մատենադարան, ձ. № 2639, թ. 492ա), որտեղ նախադասությունն ամբողջությամբ ունի հետևյալ տեսքը. «աւրինաղրէ զՄամիկոնէիցն սակս ղ զազգաց զնեղութիւնն»։ Այս նախադասության մասին տե՛ս նաև՝ ՍեՊ, էջ 170—171, որտեղ Ստ. Մալխասյանցն «աւրինաղրէ» բառը դիտում է որպես «աւրինա-» և «-ղրէն» բառերի միացություն։ Մենք բառը դիտում ենք այսպես. «աւրին-» և «-աղրէ»։*

21 История императора Иракла, сочинение епископа Себеоса, писателя VII века, перевод с армянского К. Патканяна, С. Петербург, 1862, стр. 13.

22 Pseudo-Sebêos, Texte arménien, traduit et annoté par Frédéric Macler (*տպվ.* Journal asiatique..., Juillet-Août, 1905), Paris, MDCCCCV, p. 18 (134).

23 *Հ. Ն. Ակինյան, Սեբեոս եպ. Բագրատունեաց եւ իր Պատմութիւնն ի Հերակլն։ Տպվ. Ազգ. Մատ., հատ. 2, Վիեննա, 1924, էջ 31։*

24 История епископа Себеоса, перевел с четвертого исправленного армянского издания Ст. Малхасянц, Ереван, 1939, стр. 19.

կամ էլ բնագրին մոտ լինելով՝ մնացել են նույնքան անհասկանալի, որքան որ է բնագիրը։

Կիսատ մնացած «-ազրէ» բայը, որի վերականգնումով զգալիորեն կհեշտանար նախադասության վերծանումը, բանասերներն անվերականգնելի համարելով, թարգմանության ժամանակ բաց են թողել։ Իսկ Ակինյանի վերծանությունը («օրինագրէ զՄամիկոնէից տան սպարապետութիւնն») այնքան հեռու է բնագրից, որ քննության առարկա չի կարող հանդիսանալ։

Փորձենք վերականգնել նախադասությունը։

Սկսենք մեր կարծիքով ամենից շատ աղճատված «ազգաց գնեղութիւնն» բառերից։ Սրանց փոխարեն, որպես սկզբնական բնագրում ամենից սպասելի բառ, մեզ ներկայանում է «ազգացեղութիւնն» բառը։ Սա իր տեսքով գրեթե նույնանում է «ազգացգնեղութիւնն» բառերի հետ և բովանդակությամբ համապատասխանում է բնագրին, որտեղ իսկապես ներկայացված է Մամիկոնյանների ազգացեղությունը (ազգակցական կապը, ազգականությունը)[25]։

Հայտնի է, որ ձեռագրերում բառերը գրվում էին կրճատ ձևով և առանց իրարից անջատվելու։ Այս պայմաններում երկու միասին ընդօրինակված բառեր հեշտությամբ կարող էին մեկ բառի տպավորություն թողնել, ինչպես նաև կարող էր պատահել հակառակը՝ մեկ բառն ընկալվեր որպես երկու բառ։ Բավական է, որ կրճատ ձևով գրված «ազգցեղուին» բառի Ե-ն շփոթվեր Ն-ի հետ (մի բան, որ շատ հնարավոր է), ընդօրինակող գրիչն իր առջև կունենար «ազգցնղուին» ձևը, որն ուրիշ կերպ հնարավոր չէր լինի վերծանել, քան երկու բառով՝ «ազգաց գնեղութիւնն»։

Որ «ազգաց գնեղութիւնն» բառերը իրոք սրբագրելի են՝ հաստատվում է նաև «Սեբեոսի Պատմության» հնագույն ձեռագրի (Մաշտոցի անվան Մատենադարան, ձ. № 2639, թ. 492ա) միջոցով։ Այստեղ մեզ հետաքրքրող տեղում դրված է սրբագրության նշան, որը նշանակում է, թե ձեռագիրն ընդօրինակող գրիչը չկարողանալով սկզբնագրի «ազգացեղութիւնն» բառը ճիշտ վերծանել, նրա փոխարեն գրել է իր ենթադրած «ազգաց գնեղութիւնն» բառերը, որոնց իսկության մեջ համոզված չլինելով՝ անհրաժեշտ է համարել սրբագրության նշան դնել նրանց վրա։

Բառի նմանօրինակ երկատման մի ուշագրավ օրինակ մենք հանդիպում ենք նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում։ Այստեղ Գոշը խնդրում է ուղղել իր սխալները, եթե ընթերցողն այդպիսիք պատահի Դատաստանագիրքն ընթերցելիս. «Սխալանս ուղղեսջիք պատահեալք ընթերցմամբ տառիս»։ Գրչական թյուրիմացության հետևանքով ձեռագրերի մի խմբում «ընթերցմամբ» բառն աղճատվելով դարձել է «ընթերցման Բ» (տպագիր բնագրում՝ «ընթերցման երկու»)[26], որով կարող է սխալ տպավորություն ստեղծվել, թե Գոշն ակնարկել է երկու գիրք («Բ տառիս»)։

---

25 «Ազգացեղութիւն» բառը հազվադեպ բառ է, որը հավանաբար անծանոթ է եղել «Սեբեոսի Պատմությանն» ընդօրինակող գրչին, դրա համար էլ հապավված վիճակում այն սխալմամբ վերծանվել է «ազգաց նեղութիւն»։ Բառը Հ. Աճառյանին հայտնի է եղել միայն Երուսաղեմի 1651 թ. կանոնից, ուստի և դիտվել է որպես «շատ յետին, կազմութեամբ ալ անմիտ բառ» (Հայկական նոր բառեր հին մատենագրության մեջ, հատոր Բ, Վենետիկ, 1922, էջ 155)։

26 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, Վաղարշապատ, 1880, Նախադրություն, էջ 69։ Տե՛ս նաև Գարեգին Ա Կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, հատ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 504։

Ձեռագրերի մի ուրիշ խմբում «ընթերցմամբ» բառը, դարձյալ երկատվելով, դարձել է «ընթերցման սբ (=սուրբ)»:

Այսպիսով Գոշի գրած մի բառը դարձել է երկու բառ, ինչպես որ «ազգացեղութիւն» բառը վերածվել է «ազգաց զնեղութիւնն» բառերի:

Հովհան Տարոնացու հատվածում «ազգաց զնեղութիւնն» բառերին նախորդում է «զՄամիկոնէից սակս» արտահայտությունը: Այստեղ «սակս»-ը գործածված է «մասին» իմաստով: XVI դարի մատենագիր Սիմեոն Ապարանցին, որը ձեռքի տակ ունեցել է «Սեբեոսի Պատմությունը» պարունակած մի առավել անաղարտ ձեռագիր, նույնպես «սակս» բառը գործածել է «մասին» իմաստով: Նա գրում է. «Վիպասանութիւն սակս Պահլաւունեացն զարմի և Մամիկոնեանցն սեռի»[27]: Ուրեմն «զՄամիկոնէից սակս» արտահայտությունը պետք է, որ նշանակի «Մամիկոնյանների մասին» («Մամիկոնյաններին վերաբերող») ազգացեղությունը: Միայն՝ ավելի սպասելի էր, որ «սակս»-ը գործածված լիներ «Մամիկոնէից» բառից առաջ: Եվ եթե այս պատճառով ընդունենք, որ «սակս»-ը աղավաղված բառ է՝ ապա պետք է ենթադրել, որ նրա փոխարեն սկզբնական բնագրում եղել է «զՄամիկոնէից սեռի» արտահայտությունը: Սիմեոն Ապարանցին գրում է. «սակս Պահլաւունեացն զարմի և Մամիկոնէից սեռի»: Ներսես Շնորհալին նույնպես գրում է «սակս Հայկազանցն սեռի»:

Դառնալով «-ազրէ» կիսատ բառին, դժվար չէ նկատել, որ սա երրորդ դեմք արտահայտող մի բայական վերջավորություն է, որը վերաբերում է Մամիկոնյանների կապակցությամբ վկայակոչված («-ազրէ զՄամիկոնէից») մի անձնավորության: Ինչպես կտեսնենք ստորև, այդ անձնավորությունը հենց Մամիկոնյանների զրույցը գրանցող Ագաթանգեղոսն է, որին վկայակոչելով Հովհան Տարոնացին, զրույցը քաղելուց առաջ հայտնել է, թե Ագաթանգեղոսն «այսպես է շարադրում Մամիկոնյանների ազգացեղությունը» (ազգականությունը):

Այսպիսով մենք աղճատված նախադասությունն ամբողջովին վերականգնում ենք այսպես. «[այսպէս շար]ադրէ զՄամիկոնէից սեռի ազգացեղութիւնն»:

Սիմեոն Ապարանցին իր օգտագործած «Սեբեոսի Պատմության» հիման վրա զրույցի հեղինակ է նշել Մծուրնի արձանագրության հեղինակ Ագաթանգեղոսին: Թերթերի տեղափոխության պատճառով զրույցը մեզ հասած ձեռագրերում հեռացել է Ագաթանգեղոսի անունը կրող գլխից, հայտնվել է Գ գլխում և այդպիսով կորցրել է իր իրական հեղինակի հետքերը: Ակադեմիկոս Մալխասյանցը կարգավորել է «Սեբեոսի Պատմության» Է—Թ գլուխների միջև ընկած մի շատ կարևոր տեղափոխություն[28], բայց դեռ մնում են կարգավորման ենթակա հատվածներ, որոնցից է նաև Մամիկոնյանների զրույցը, որը մեզ հասած բնագրի Գ գլխում անբնական վիճակով խցկված է իրենից առաջ և հետո գտնվող հակիրճ ժամանակագրական ցանկերի միջև: Այդ գլխի նյու-

27 Սիմէօն վարդապետի Ապարանցւոյ վիպասանութիւն սակս Պահլաւունեաց զարմի եւ Մամիկոնեանցն սեռի, Վաղարշապատ, 1870: Հմմտ. Ներսես Շնորհալի, «Շարադրութիւն համերական վիպասանութեամբ սակս Հայկազանցն սեռի եւ Արշակունեացն զարմի» (Բանք չափաւ, Վենետիկ, 1830, էջ 493):

28 Տե՛ս ՍեՊ, էջ 28—41: Այս մասին տե՛ս նաև ՍեՊ, էջ 178—180, ծան. 29—30:

*թերը քաղված են, ինչպես խորագիրն է նշում, Ստեփանոս Տարոնացուց[29] (Ասողիկից), ուստի Մամիկոնյանների զրույցն այստեղ անելիք չունի։*

*Սիմեոն Ապարանցու «Վիպասանության» համաձայն զրույցն սկզբնապես պետք է, որ գտնված լինի այժմյան Բ գլխում, որտեղ զետեղված է Բագրատունիների ազգաբանությունը։ Բագրատունյաց պատմությունը գրող Հովհան Տարոնացին Բագրատունիների բնիկ հայկական ծագումը փաստարկելուց հետո հավանաբար կամեցել է ցույց տալ նրանց առավելությունը Մամիկոնյանների նկատմամբ և դրա համար էլ քաղել է Մամիկոնյանների չենական ծագման մասին զրույցը, ասելով. «Ոչ են սոքա որդիք ազգածնին Արմենակայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ»։*

*Ի դեպ՝ Սիմեոն Ապարանցու ունեցած ձեռագրում Բագրատունիների ազգաբանության և Մամիկոնյանների զրույցի միջև եղել է մի բնագիր, որը մեզ հասած ձեռագրում բացակայում է։*

*Այս բնագիրը պարունակել է Արշակ (Սիմեոն Ապարանցու մոտ՝ վրիպմամբ՝ «Վաղարշակ»[30]) թագավորի գործերի նկարագրությունը, որի տվյալները մեզ տանում են դեպի այն միևնույն սկզբնաղբյուրը, որից օգտվել է նաև Մովսես Խորենացին։ Սիմեոն Ապարանցին այդ հատվածի բովանդակությունը պատմում է հետևյալ տողերում.*

*Իսկ Վաղարշակ զչուն ընթացեալ*
*Եւ թշնամեացն պատուհասեալ,*
*Արիապէս շահատակեալ,*
*ԶՄորփիւլիկանըն սատակեալ,*
*Զիշխանութիւն յինքըն կորզեալ,*
*ԶՄակեդոնեան անունն եղծեալ։*

*Եւ այսքանիւք ոչ շատացեալ,*
*Այլ ի յոլովըն ձեռնարկեալ,*
*Սերունդ ազգին զաճումն առեալ,*
*Մինչ ի Վարդանըն պսակեալ։*

---

29 *«Սեբեոսի Պատմության» առաջին հրատարակիչ Թադեոս Միհրդատյանը Գ գլխի խորագրում նշված Ստեփանոս Տարոնացուն համարում է Սեբեոսից առաջ ապրած հեղինակ և գտնում է, որ նա է հայոց Խոսրով թագավորի պալատում լսել Մամիկոնյանների զրույցը։ Այս կարծիքն առաջին անգամ հերքեց Ք. Պատկանյանը «Սեբեոսի Պատմության» ռուս. թարգմանությունում, որի առաջաբանում նա հայտնում է, որ Ստեփանոս Տարոնացին XI դարի մատենագիր Ասողիկն է։ Ք. Պատկանյանից բացի «Տիեզերական Պատմությունից» վերցված հատվածն իրավամբ Ասողիկինն են համարել նաև Գր. Խալաթյանցը, Հ. Հյուբշմանը, Ն. Ադոնցը, Գ. Տեր-Պողոսյանը և այլք, որոնք, սակայն, հատվածն անջատել են նախորդ և հաջորդ գլուխներից և համարել են հետագա ժամանակի ընդմիջարկություն։ Ն. Ադոնցը* (Начальная история Армении у Себеоса, *տպված՝* «Визант. временник», *1901, էջ 66) Մամիկոնյանների զրույցի տեղը ցույց է տալիս նույն գլխում (տես ՍեԳ, էջ 14—15), այնտեղ որտեղ խոսվում է Կոռնակի մասին և զրույցի վայրը համարում է պարսից Խոսրով թագավորի արքունիքը։ Ն. Ակինյանը («Հանդէս ամսօրեայ», 1911, էջ 528, ծանոթություն) առանց բացատրելու, հայտարարում է, որ Խոսրովի արքունիքում Մամիկոնյանների զրույցը լսած անձնավորությունը եղել է Վրթանես քերթողը։ Իսկ Ա. Մատիկյանը (Անանունը կամ Կեղծ-Սեբեոս, Քննական ուսումնասիրություն, Վիեննա, 1913, էջ 54—55 են) այդ անձնավորությանը նույնացնում է Փավստոս Բուզանդի հետ, որը նրա կարծիքով ապրել է չորրորդ դարում, Խոսրով Գ-ի օրոք։*

30 *Հմմտ. Գր. Տեր-Պողոսյան, Նկատողություններ Փավստոսի Պատմության վերաբերյալ, մաս երկրորդ, Վիեննա, 1919, էջ 113։*

*Զորք հարիւր և հինգ ամ տևեալ,*
*ՅԱրտաշիսէ Թագըն բարձեալ։*
Ի յայս միջոցս բանս լռեալ,
Ի յոլովէն գոլով կասեալ[31]։

*Ընդգծված և նրանից հաջորդող տողերում հայտնվում է, որ Սիմեոն Ապարանցու օգտագործած բնագրի հեղինակը Վաղարշակի (Արշակի) գործերի նկարագրությունից հետո լռել է («Ի յայս միջոցս բանս լռեալ») և շատ բան բաց թողնելով («Ի յոլովէն գոլով կասեալ») անմիջապես անցել է Մամիկոնյանների զրույցին.*

*Զի պատմագիրն ոչ ախորժեալ,*
*Ըզթերթողին (Մովսես Խորենացուն—Գ. Ա.) կրկնաբանեալ,*
*Այլ զձեռնագունս յիշատակեալ,*
*ԶՄամիկոնեանսըն զեկուցեալ,*
*Վասըն սոցա գրուակագրեալ,*
*Բայց Մովսէսի ոչ ձայնակցեալ,*
Ագաթանգեղայ զոյ հետևեալ,
Այն որ զդեսպանն ճենաց հարցեալ,
Ի սոցանէ զատոյգն ուսեալ,
Յորմէ գրով մեզ աւանդեալ...[32]

*Ինչպես տեսնում ենք, ընդգծված տողերում որոշակիորեն հայտնվում է, որ ճենացի դեսպանին հարցնողը և Մամիկոնյանների զրույցը գրի առնողը ոչ թե Սեբեոսն է, այլ Ագաթանգեղոսը։*

*Այսպիսով պարզվում է, որ Սիմեոն Ապարանցու օգտագործած ձեռագրում ուղղակի նշված է եղել, որ Մամիկոնյանների զրույցի հեղինակն Ագաթանգեղոսն է[33]։*

*Ապարանցու բնագրում միաժամանակ տեղեկացվել է, որ Մամիկոնյանների զրույցն ավանդված է եղել* գրավոր. *«Յորմէ գրով մեզ աւանդեալ»։ Սա գալիս է հաստատելու մեր ենթադրած «շարադրէ» բառը («այսպէս* շարադրէ *զՄամիկոնէից սակս ազգացեղութիւնն»)։*

*Զրույցի գրավոր ձևով ավանդված լինելու հանգամանքը մի շատ կարևոր փաստ է, որի հիման վրա կարելի է ենթադրել, թե Հովհան Տարոնացին Մարաբասյան մատյանում Մծուրնի արձանագրությունից բացի գտած է եղել Ագաթանգեղոսի անվան հետ կապվող ևս մեկ ուրիշ բնագիր, որից քաղել է Մամիկոնյանների զրույցը։ Այս սկզբնաղբյուրը պետք է, որ արձանագրությունից ավելի ընդարձակ բովանդակություն ունենար, որպեսզի Հովհան Տարոնացին կարողանար Մամիկոնյանների զրույցը ներկայացնել որպես նրանից քաղված մի հատված։ Եվ այդ սկզբնաղբյուրը մեր կարծիքով նույն Մարաբասի մատյանն է, որտեղ գտնվել է նաև Ագաթանգեղոսի արձանագրությունը։*

*Նկատի ունենալով, որ Մծուրնի արձանագրությունը պարունակել է առաջին հայ թագավորաց ժամանակագրությունը, կարելի է ենթադրել, որ Մամիկոնյանների Հայաստանում կատարած գործերը նույնպես Ագաթանգեղոսը*

---

31 *Ս. Ապարանցի, Վիպասանութիւն..., էջ 28։*

32 *Նույն տեղում, էջ 28—29։*

33 *«Սոփերք Հայկականք»-ի մի ծանոթագրությունից երևում է, որ Սիմեոն Ապարանցու «Վիպասանութիւնից» բացի գոյություն են ունեցել Մամիկոնյանների զրույցի կապակցությամբ Ագաթանգեղոսի հեղինակությունը փաստարկող նաև այլ հիշատակարաններ։ Տե՛ս Սոփերք հայկականք, հատոր Զ, Վենետիկ, 1853, էջ 144, ծանոթություն։*

(Մարաբայի մատյանում) նշած է եղել այդ թագավորների օրոք։ Բայց գրույցի այս մասը, այսինքն Մամիկոնյանների գործունեությանը (և ոչ թե՝ ծագմանը) վերաբերող մասը չի պահպանվել և մեզ հասել է միայն Մամիկոնյանների ճենական ծագման մասին պատմող բնագիրը։ Եվ հիրավի, տեսանք, որ գրույցն սկզբից թերի է և սկսվում է «-ազրէ» կիսատ բառով։ Դրանից առաջ հավանաբար նկարագրված է եղել Մամիկոնյանների գործունեությունը։

Սիմեոն Ապարանցու միջոցով պարզվում է նաև, որ մեզ հասած բնագրում գրույցը թերի է նաև վերջից։ Այսպես, գրույցի մեզ ծանոթ մասը վերապատմելուց հետո Ապարանցին հայտնում է, որ իր ունեցած ձեռագրում փառաբանվել է Մամիկոնյանների հայրենիքը՝ Ճենաստանը, որը համեմատվել է Ադենի (դրախտի, եդեմի) հետ.

Այլև զաշխարհն ներբողեալ,
Մինչ Ադենայ համեմատեալ,
Բազմատեսակս քրքըմաւէտ
Սիրամարգօք գեղեցկացեալ,
Հըրաշէիւք, էշ, այծեմամբք,
Ցամօրէիւք հովիտք լցեալ։
Անգին ակամբք և մարգարտիւք
Հասարակաց զեղազարդեալ,
Ջաւ մեզ ազնիւն, զհապիւ զրտեայն,
Զթագաւորաց պիտոյացեալն,
Նոցա յանդէտս է համարեալ,
Սակս բազմութեան աղընդոտնեալ,
Քան զհանուրս պարարտացեալ,
Եւ բըղխակիչս յըղփացուցեալ։
Մինչ տեսողացն ցանկացեալ,
Երանութեան բանս բարբառեալ,
Անդ, ուր այրին ոչ դառնացեալ
Եւ ոչ որբոյն յողաց հանեալ[34]։

Մովսես Խորենացու Ճենաստանի գովքը հիշեցնող և միաժամանակ նրանից տարբերվող այս ավանդությունը միանալով Խորենացու պատմածին, ցույց է տալիս, որ Մամիկոնյանների գրույցը հնում բաղկացած է եղել ոչ միայն Մամիկոնյանների Հայաստան գալու պատմությունից, այլև Մամիկոնյանների ծննդավայրի Ճենաստանի ներբողից, որ գրի են առել ինչպես Մովսես Խորենացին, այնպես էլ Հովհան Տարոնացին։ Ներբողի հետքերը տարբեր ավանդությամբ գտնում ենք նաև Անանիա Շիրակացու և Վարդան Արևելցու «Աշխարհացույց»-ներում[35]։

---

34 Սիմէօն Ապարանցի, Վիպասանութիւն, էջ 30—31։

35 Հմմտ. Մամիկոնյանների գրույցը Մովսես Խորենացու (գիրք երկրորդ, գլ. ՁԱ) և Սիմեոն Ապարանցու («Վիպասանութիւն», էջ 30—31) մոտ, ինչպես նաև Ճենաստանին վերաբերող մասը Անանիա Շիրակացուն վերագրվող Աշխարհացույցում (տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 354) և Չինումաչինի մասին հատվածը Վարդան Արևելցու Աշխարհացույցում (Աշխարհացոյց Վարդանայ վարդապետի, քննական հրատարակութիւն Հայկ Պէրպէրեանի, Բարիզ, 1960, էջ 53)։ Ինչպես երևում է, Վարդան Արևելցին Մամիկոնյանների գրույցի Ճենաստանը դիտել է որպես Չինումաչին, դրա համար էլ Չինումաչինը նկարագրելիս է օգտագործել Ճենաստանի ներբողը։

Գրիգոր Տեր-Պողոսյանը չնկատելով Ճենաստանի մասին մեր նշած չորս աղբյուրներում հանդիպող տեղեկությունների տարբերությունը՝ կարծիք է հայտնել, թե Խորենացու և «Սեբեոսի»

Այս տեսակետից առանձնապես ուշագրավ է Վարդան Արևելցու «Աշխարհացույցը», որտեղ համարյա բառացի կրկնությամբ հանդիպում է Հովհան Տարոնացու երկի սկզբնական բնագրում եղած և Սիմեոն Ապարանցու «Վիպասանության» միջոցով մեզ հասած մի արտահայտություն.

| Վարդան Արևելցի | «Սեբեոսի Պատմություն» |
| --- | --- |
| ոչ որըն լալ և ոչ այրին յոգոց հանէ | (Սիմեոն Ապարանցու մոտ պահպանված)<br>Անդ ուր այրին ոչ դառնացեալ,<br>Եւ ոչ որբոյն յոգոց հանեալ |

Սիմեոն Ապարանցին բացահայտում է նաև հետևյալ հետաքրքիր փաստը։

Հովհան Տարոնացին Մամիկոնյանների զրույցից հետո շարադրած է եղել VIII դարի պատմիչ Ղևոնդից վերցրած մի հատված՝ կանացի զգեստների մեջ ծպտյալ երեսուն հազար Ճենացի զինվորների և Մահմեդի զորքերի միջև տեղի ունեցած առասպելական մարտի մասին։ Ճենաստանի ներքողը վերապատմելուց անմիջապես հետո Սիմեոն Ապարանցին շարադրում է Ղևոնդից բերված այդ հատվածի բովանդակությունը՝

Բռնաւ հինից զնա (Ճենաստանը—Գ. Ա.) ոչ տեսեալ,
ՅԱղեքսանդրէ ոչ աւերեալ,
Ի Մահմէտէ ոչ կասկածեալ,
Այլ խաքկանօք զզօրսն կոտորեալ։
Յորժամ պղծոյն անդ ժամանեալ,
Զաչագեղեայ աղջկունս տեսեալ,
Ճենքագուրին ըզգացուցեալ,
Երսուն հազար կոյս աղերսեալ,
Իսկ նա զվաշէս սպառազինեալ
Եւ կանացի զգեստս ծածկեալ,
Սուտ մարգարէն այսու փորձեալ
Եւ սրտութիւնն յանդիմանեալ։
Յորմէ Մահմէտ ամբաստացեալ,
Ըստ խրրատուն զՓեսուն անցեալ,
Զխանդիճաղանճն յայսկոյս Թողեալ
Եւ զմեծազգիս յայնկոյս տարեալ։
Եւ մինչ կամէր զբարձանալ,
Ընդ օրիորդսն փափկանալ,
Մանկունքն ի սայլէն վար հոսեալ
Եւ զերկսայրին ի գործ արկեալ,
Զերսուն հազարսն խողխողեալ,
Մահմէտ սակաւ արամբ ապրեալ,
Այնուհետեւ ոչ յաւելեալ
Ըզճէն անուն ի միտ բերեալ[36]։

Ղևոնդից վերցված հատվածի մասին գոյություն է ունեցել սխալ պատկերացում, որի համաձայն Ապարանցին հատվածի բովանդակությունը գտել է

---

համար ընդհանուր աղբյուր է ծառայել Անանիա Շիրակացուն վերագրվող «Աշխարհացույց»-ը (տե՛ս Գ ր. Տ ե ր-Պ ո ղ ո ս յ ա ն, Նկատողություններ Փավստոսի Պատմության վերաբերյալ, էջ 73)։

36 Ս ի մ է օ ն Ա պ ա ր ա ն ց ի, Վիպասանութիւն, էջ 31—32։ Հմմտ. Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վրդ. Հայոց, գլ. ԺԱ, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 37—40։

իբր ոչ թե իր ունեցած ձեռագրում, այլ ինքն է քաղել Ղևոնդից և կցել Մամիկոնյանների զրույցին[37]։ Բատ այսմ չի նկատվել, որ Ապարանցին ուղղակի հայտնում է, որ Ղևոնդի հատվածի բովանդակությունն ամբողջությամբ իրեն ծանոթացրել է իր ձեռագրի հեղինակը՝

Զայս ամենայն մեզ ծանուցեալ
Եւ զոճ բանին առ այլս փոխեալ,
ԶՄարաակէ ակիզբն արարեալ...[38]։

VIII դարի պատմիչից քաղված տեղեկությունների առկայությունը Սիմեոն Ապարանցու ունեցած ձեռագրում մի նոր ապացույց է այն իրողության, որ Մամիկոնյանների զրույցը ինքնուրույն ակնհայտորեն միացած VII դարում գրված «Սեբեոսի Պատմությանը»։

Տեսանք, որ Զենոբ գլակացու հետ զրուցողը և Մամիկոնյանների զրույցը գրանցողը եղել է Ագաթանգեղոսը։ Կնշանակի խոսրով արքայի արքունիքը, որտեղ նա հանդիպել է Զենոբ գլակացուն՝ հայոց խոսրով մեծ արքայի՝ Տրդատի հոր արքունիքն է, որովհետև ուրիշ աղբյուրներից գիտենք, որ Ագաթանգեղոսն ապրել է խոսրովի ժամանակներում։ Հայկական աղբյուրներում նա ներկայացված է որպես խոսրովի որդու՝ Տրդատի քարտուղար։ Այժմ Սիմեոն Ապարանցու տեղեկություններից հետևում է, որ ավանդությունը նրան արքունի դպիր է համարել նաև խոսրովի թագավորության ժամանակ։

Զակերտների բացակայության պատճառով Հովհան Տարոնացու հատվածում իրար են խառնված Տարոնացու և Ագաթանգեղոսի խոսքերը, սակայն բնագրի ուշադիր քննության դեպքում դժվար չէ նկատել երկու տարբեր հեղինակների առկայությունն այնտեղ։ Այսպես. սկզբում հայտնվում է, որ Մամիկոնյանները Հայաստան են եկել հայոց խոսրով և պարսից Արտավան թագավորների օրոք և այս մասին հեղինակը լսել է Զենոբ գլակացուց։ Բայց հետագայում Զենոբ գլակացին ոչ մի թագավորի անուն չի տալիս։ Սա նշանակում է, որ թագավորների անուն տվողը Հովհան Տարոնացին է, իսկ Զենոբ գլակացու զրույցը քաղված է ուրիշ պատմիչից՝ Ագաթանգեղոսից, դրա համար էլ տրամաբանական կապ չկա հատվածի սկզբի և շարունակության միջև։

Հատվածը պետք է վերծանել այսպես.

Այսպէս շարադրէ զՄամիկոնէիցն սեռի ազգացեղութիւնն (քանզի ոչ են սոքա որդիք ազգածնինն Արամենակայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ յամս Արտաւանայ արքայի Պարթեաց և Մեծին խոսրովու արքայի Հայոց). «Որպէս լուայ յառնէն մեծէ, որ եկեալ էր հրեշտակութեամբ ի Ճենաց թագաւորէն առ արքայն խոսրով, յոր իմ հարցեալ ի դրանն արքունի, եթէ «Ազգ մի մեծ ի Հայաստան երկրի կայ, զորմէ ասեն եթէ ի ձերմէ աշխարհէն գնացեալ են»: Եւ նա ասաց ինձ. «Ասեն, ասէ, զուասն և ի մերում աշխարհին յերգս իւրեանց զՄամիկն և զԿոնակն, առս երկուս լեալ քաջս և գլխաւոր եղբարս հարազատս,

37 Տե՛ս Բ. Սարգիսյան, Սիմեոն Ապարանցին և Կեղծ Սեբեոսի առեղծվածը. «Բազմավէպ», 1915, էջ 7։

38 Այս տողերը միաժամանակ ցույց են տալիս, որ Սիմեոն Ապարանցու օգտագործած ձեռագրում Մարացակի հատվածը զանված է եղել Ղևոնդից քաղված հատվածից հետո, այսինքն Մամիկոնյանների զրույցից հետո։

որդիք Կառնամայ նախարարին, որ էր երկրորդ ի թագաւորութեանն Ճենաստանի»[39] *և այլն։*

*Ընդգծված խոսքերով սկսվում է Ագաթանգեղոսի պատմածը։ Իսկ դրանից առաջ խոսում է Հովհան Տարոնացին, որն Ագաթանգեղոսին արտագրելուց առաջ միջանկյալ նախադասությամբ (որը մենք բերել ենք փակագծերի մեջ) հայտնել է իրեն ծանոթ եղած մի տեղեկություն այն մասին, որ Մամիկոնյանները Հայաստան են եկել Խոսրով և Արտավան թագավորների օրոք։ Այս անունները Ճենաց դեսպանի պատմածում չէին կարող հանդիպել ոչ միայն այն պատճառով, որ հեռավոր Ճենաստանում ապրող մի մարդ հազիվ թե հիշեր իրենից հարյուրավոր տարիներ առաջ Հայաստանում և Պարսկաստանում իշխած թագավորների անունները, այլ նաև այն պատճառով, որ որքան մեզ հայտնի է, ճենացիները (եթե դրանք իրոք չինացիներ են) դեսպանի Հայաստան եկած ժամանակներում չէին կարող իրենց լեզվով, այսինքն՝ միջին չինարենով ճշգրիտ արտասանել ո՛չ Արտավան, ո՛չ Խոսրով, ո՛չ էլ գրույցում հանդիպող մյուս այն անունները, որոնց կազմում ր հնչյուն կա։ Չինարենը ր չունի և նրա փոխարեն օգտագործում է հայերենում և պարսկերենում գոյություն չունեցող մի կիսաձայնավոր հնչյուն, որը գերազանցապես հանդիպում է որպես վանկը փակող հնչյուն[40]։ Ուստի և Խոսրով և Արտավան անունները ճենացի դեսպանների բերանում դարեդար կրկնվելով այնպես անճանաչելիորեն փոխված կլինեին, որ ճենաց դեսպանի օրոք նրանցից արդեն մնացած կլինեին միայն «ճենականացած» անծանոթ անուններ։ Այնպես, որ Խոսրով և Արտավան անունները կապ չունեն ճենաց դեսպանի հետ, չեն կարող վավերական մի սկզբնաղբյուրում գտնված լինել, այլ արդյունք են հայկական հողում առեղծված մի ժողովրդական ավանդության, որին և հետևել է Հովհան Տարոնացին XI դարում։*

*Մամիկոնյանների ցեղը այս կամ այն թագավորի անվան հետ կապելը ուշ ժամանակի արդյունք է։ Հնագույն աղբյուրը, այսինքն Ագաթանգեղոսի բերանով պատմված ավանդությունը, ինչպես տեսնում ենք, որևէ թագավորի անուն չի նշում։*

*Հայոց դարձի պատմության հեղինակ Ագաթանգեղոսը նույնպես ոչ մի խոսք չի ասում Տրդատի օրոք Մամիկոնյանների Հայաստան գալու մասին։ Ընդհակառակը, նրա մի վկայության համաձայն Մամիկոնյանները Տրդատի ժամանակ արդեն Հայոց բանակի սպարապետության պաշտոնն էին վարում։ Նա գրում է. «Թագաւորն Տրդատ՝ վաղվաղակի փութով և անդրադարձէս արձակէր արս երիս աւագս փառաւորս պատուականս հրովարտակօք հանդերձ, զի զերկոսին որդիսն Գրիգորի վաղ առ նա հասուսցեն։ Եւ որք առաքեցանն*

---

39 *ՍեՊ, էջ 12։*

40 *Մամիկոնյանների գրույցում Խորենացու և Ագաթանգեղոսի մոտ (ինչպես նաև Ճենաստանի կապակցությամբ Անանիա Շիրակացուն վերագրվող Աշխարհացույցում և այլ մատենագիրների մոտ) հանդիպում է նաև «Ճենբակուր» բառը, որը իբր դարձյալ ճենական բառ է։ Սակայն գիտնականներն արդեն ցույց են տվել, որ դա թուրքական լեզուներին պատկանող մի բառ է, որը ոչ միայն հայ, այլև օտար մատենագիրներ շփոթել են չինարեն բառի հետ։ Այս բառի մասին գոյություն ունեցած կարծիքների ամփոփումը տե՛ս* H. Sköld, L'origine des Mamikoniens d'après Moïse de Khorène—„Revue des Etudes Arméniennes", tome V, Fasc. 1, Paris, 1925. p. 131—136. *Այստեղ նշված է մի բառի շփոթ նաև Ֆիրդուսու մոտ։ «Ճենբակուր»-ի մասին նույն հանդեսում (էջ 141—145) համեմատիր նաև՝* Louis H. Gray, Un drame anglais de source arménienne.

յարքայէ զնոցանէն, զի ածցեն զնոսա՝ այսորիկ են. առաջնոյն անուն Արտավազդ[41], որ սպարապետ էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց»[42]։

Այստեղ Արտավազդի Մամիկոնյան ազգանունը չի նշված, բայց այդ անունը պահպանվել է Ագաթանգեղոսի Պատմության հին հունական թարգմանությունում[43]։ Այս բնագիրը պարունակող նորահայտ Մաքրիդյան ձեռագիրը (ընդօրինակված՝ 1107 թ.), որ հրատարակել է Բելգիացի վաստակավոր հայագետ Ժերար Գարիտը, երեք տարբեր տեղերում պահպանել է հիշատակություններ Տրդատի օրոք Հայաստանում իշխած Մամիկոնյան սպարապետական տան մասին։ Այսպես, տպագիր բնագրի 72-րդ էջում հանդիպում է Տրդատի ժամանակակից իշխանների մի ցանկ, որի մեջ նշված է նաև «Մամիկոնյանների տերը, սպարապետը, հրամանատարը հեծելազորի և հետևակի ամենայն հայոց»[44]։ Մի այլ տեղում՝ Տրդատին դեպի Կեսարիա ուղեկցող շքախմբին գլխավորում է «Արտավազդը՝ Մամիկոնյանների տերը և սպարապետը»[45]։ Երրորդ հիշատակությունը վերաբերում է Մամիկոնյանների տոհմին պատկանած «սպարապետական երկրին»[46]։

Այս տեղեկությունները նույնությամբ հանդիպում են նաև Ագաթանգեղոսի Պատմության արաբական թարգմանությունում (որը ծագում է հունարենից)։ Այստեղ կարդում ենք. «Նրա (Տրդատի—Գ. Ա.) մոտ եկան երեք թագավոր՝ աբխազաց թագավորը, վրաց թագավորը և ալանաց թագավորը, նրանց հետ միասին նաև՝ իշխանաց խումբը... Հինգերորդն էր Մամիկոնյան իշխանը, կոչումով սպարապետ։ Նա տերն էր ամենայն զորաց հայոց, ինչպես հեծելազորի, այնպես էլ հետևակի և չէր հեռանում հայոց մեծ թագավորից»[47]։ Տրդատի Կեսարիա կատարած այցը նկարագրելիս հաղորդվում է. «Եվ Տրդատին բարձրացրեցին թագավորական կառքի վրա, որը զարդարված էր ոսկով և թանկագին քարերով։ Մեծատոհմիկ ազնվականները հանդիսավոր կերպով ուղեկցում էին սրբին դեպի Կեսարիա։ Եվ ամենայն զորաց հրամանատարությունը գտնվում էր Արտավազդի՝ Մամիկոնյան իշխանի և սպարապետի ձեռքում»[48]։ Մամիկոնյանների գավառը Տրդատի օրոք կոչվել է «Մամիկոնյանների սպարապետական երկիր»[49]։

Տրդատի ժամանակ ապրած Արտավազդ սպարապետի Մամիկոնյան ցեղին պատկանած լինելու մասին կողմնակի տեղեկություն է պահպանվել նաև Փավստոս Բուզանդի «Հայոց պատմությունում»։ Գ դպրության է գլխում կարդում ենք. «Ապա եկն եհաս Վաչէ որդի Արտաւազդայ ի Մամիկոնէն տոհմէն, զօրավար ամենայն Հայոց մեծաց»։ Ինչպես տեսնում ենք այստեղ հայտնվում է, որ Վաչեն Մամիկոնյան տոհմից էր, Արտավազդի որդին։ Իսկ այս Արտա-

[41] Արտավազդ անվան կապակցությամբ Ն. Ադոնցը („Byzantion", IX, 1934, Bruxelles. p. 240) գրում է. «Արտավազդը..., անշուշտ, մի Մամիկոնյան անուն է»։

[42] Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Կանայեանց, Տփխիս, 1909, էջ 451, § 860։

[43] Տե՛ս Gérard Garitte, Documents pour l'étude du Livre d'Agathange, Citta del Vaticano, MCMXLVI, p. 246.

[44] Անդ, 72։

[45] Անդ, 83։

[46] Անդ, 103։

[47] Н. Я. Марр, Крещение армян, грузин, абхазов и аланов святым Григорием арабская версия, С. Петербург, 1905, стр. 115.

[48] Անդ, էջ 123։

[49] Անդ, էջ 137։

վաղը հենց Տրդատի օրոք ապրած Արտավազդն է, որի որդի Վաչեն էլ սպարապետության պաշտոն էր ժառանգել Տրդատի որդի Խոսրովի օրոք[50]։

Տրդատին ծառայություն մատուցած Մամիկոնյան իշխանի մասին է խոսվում նաև Բուզանդարանից ծաղկաքաղ արված մեկ ուրիշ սկզբնաղբյուրում՝ Մեսրոպ երեցի գրքում։ Այստեղ կարդում ենք՝ «Նախնիքն մեր Մամիկոնեանք Վահան և Վաչէ և Արտաւազդ յաւուրսն Տրդատայ և Խոսրովու և Տիրանայ և հայրն իմ Վասակ յաւուրսն Արշակայ»[51]։

Փավստոս Բուզանդի «Հայոց պատմությունում» պահպանված որոշ տեղեկությունների համաձայն Մամիկոնյանները Հայաստան են եկել Տրդատից շատ առաջ, հայոց առաջին Արշակունի թագավորների օրոք։ Հինգերորդ դպրության ԼԷ գլխում Մանվել Մամիկոնյանը Պապ թագավորի հաջորդ Վարազդատին դիմում է այսպիսի խոսքերով. «Ի ննոց ժամանակաց հետէ միամտութեամբ առ ձեզ՝ Արշակունիս վաստակեալ եմք և եղեալ զանձինս մեր ի վերայ ձեր, ամենայն նախնիքն մեր առաջինն անկան ի պատերազմունս ի վերայ ձեր»։ Ընդգծված բառերը մատնանշում են Վարազդատից մի քանի սերունդներ առաջ եղած ժամանակներ։

Նույն գլխում Փավստոս Բուզանդը բառացիորեն հայտնում է, որ առաջին Արշակունիներն արդեն ճանաչում էին Մամիկոնյաններին. «Առաջին թագաւորքն Արշակունիք, որք գիտէինն զմեզ, ով էաք կամ ուստի էաք»։

Ուշագրավ են Փավստոս Բուզանդի «առաջին թագաւորքն Արշակունիք» և Հովհան Տարոնացու հատվածում պահպանված Մծուրնյան արձանագրության «զամս առաջին թագաւորացն Հայոց» արտահայտությունները։ Առայժմ չպնդելով, որ սրանք միևնույն հեղինակի խոսքեր են, ուզում ենք զուգադրել միմյանց արձագանքող այս տեղեկությունները, ցույց տալու համար այն փաստը, որ Փավստոս Բուզանդը Մամիկոնյաններին համարում է առաջին հայ թագավորների ժամանակակից իշխաններ, իսկ Ագաթանգեղոսը Հովհան Տարոնացու մոտ ներկայացված է որպես այդ միևնույն թագավորների ժամանակագրությունը Մծուրնում արձանագրող հեղինակ։ Արդյոք սա նույնպես չի՞ նշանակում, որ Մծուրնի արձանագրության և Մամիկոնյանների զրույցի աղբյուրն ընդհանուր է։

Մովսես Խորենացին (գիրք Ա, գլ. 14) Մարաբասյան սկզբնաղբյուրի առթիվ հայտնում է, որ արքունի դիվանում պահպանված են եղել նաև գուսանական պատմություններ։ Պետք է ենթադրել, որ այս միևնույն ավանդության հետ է կապված նաև Ագաթանգեղոսի անվամբ շարադրված Մամիկոնյանների զրույցը, որի նյութը նույնպես, ինչպես երևում է, ավանդությունը վերագրել է այն միևնույն արքունի դիվանին, որտեղից և քաղված է Մծուրնի արձանագրության նյութը («հրամանաւ քաջին Տրդատայ՝ առեալ ի դիւանէ արքունի»)։ Գաղտնիք չէ, որ Մամիկոնյանների զրույցը գուսանական պատմության դրոշմ է կրում։

Մովսես Խորենացին, ի տարբերություն Հովհան Տարոնացու, Մամիկոնյանների գաղթի ժամանակ է նշել ոչ թե Խոսրովի, այլ՝ Տրդատի թագավորության տարիները։ Սա կարելի է բացատրել նրանով, որ Խորենացու հայտնի

50 Հմմտ. Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական վեպը, Թիֆլիս, 1908, էջ 118, ծանոթություն։ Նաև՝ Իշխան Թումանյան, Մի քանի նկատողություն Մամիկոնյանց գաղթականության վրա, «Հ. Ամս.», 1911, էջ 520—521։

51 Մեսրոպ երեց, Պատմութիւն, Կ. Պոլիս, 1737, էջ 214—215։

ավանդությունում Խոսրովի անունը փոխարինված է եղել Տրդատի անվամբ։ Բոլորովին զարմանալի չէ, «երբ վիպական մի գործող անձ երկուսի է բաժանվում։ Պապ և Թոռ (կամ Հայր և որդի), նոր ծագած անվանը սովորաբար վերագրվում են մյուս հերոսներից մեկի կամ մյուսի այս կամ այն դեպքերը. հասկանալի է՝ տարբեր պատումների մեջ հաճախ նաև տարբեր ձևերով և տարբեր դեպքերի»[52]։ Մանուկ Աբեղյանի այս բացատրությունը լիովին վերաբերում է նաև Խոսրովի և նրա որդի Տրդատի անունների փոխանցմանը Հովհան Տարոնացու օգտագործած սկզբնաղբյուրի և Խորենացու մոտ։

Շփոթի այդպիսի մի օրինակ է նաև VII դ. պատմիչ Հովհան Մամիկոնյանի Պատմությունում պահպանված ավանդությունը Տրդատի հյուսիսային ազգերի դեմ վարած կռիվների մասին։ Այս միևնույն իրողությունները Փավստոս Բուզանդի «Հայոց պատմությունում» պատմվում են Տրդատի որդի Խոսրովի կապակցությամբ[53]։

Գիտնականներն անգամ կարծիք են հայտնել, թե Տրդատ թագավորներից մեկի անունը միաժամանակ եղել է Խոսրով[54]։

Հետաքրքիր է, նաև, որ Հովհան Մամիկոնյանի հաղորդած «Գիսանե-Դեմետր» զրույցի պատումներից մեկում, որը հանդիպում ենք XVII դ. ժամանակագիր Դավիթ Բաղիշեցու ժամանակագրության մի տարբերակում, անդի է ունեցել շփոթ նաև հայ և պարսիկ թագավորների միջև[55]։ Հովհան Մամիկոնյանի պատումի համաձայն «Դեմետր և Գիսանէ իշխանք էին Հնդկաց և եղբարք ցեղով և փախուցեալ ի թագաւորէն Հնդկաց, հալածեցան և եկին մինչև յաշխարհս յայս։ Եւ իբրև եկին առ թագաւորն Հայոց Վաղարշակ եւ նա ետ զերկիրն Տարաւնոյ յիշխանութեամբ նոցա»[56]։ Սրան հակառակ, Դավիթ Բաղիշեցու տարբերակի համաձայն Դեմետրը և Գիսանեն եկել են ոչ թե հայոց թագավոր Վաղարշակի, այլ՝ պարսից արքա Արշակի մոտ։

Փաստերի այս լույսի տակ, թվում է, դժվար չէ պատկերացնել, թե ինչպես է պատահել, որ Մամիկոնյանների գաղթի ժամանակը կապվել է մեկ Խոսրովի, մեկ Տրդատի անունների հետ։

Ժամանակակից պատմագիտությունը հայ և օտար աղբյուրների քննությամբ վերջնականապես պարզել է, որ Մամիկոնյանները Հայաստանում հաստատվել են Խոսրովից և Տրդատից շատ առաջ։ Այս իրողությունը մենք հաստատեցինք մի շարք պատմիչների միջոցով։ Այժմ ավելացնենք երկու այլ սկզբնաղբյուր, որտեղ արդեն անվանապես հիշատակված են նախքան Տրդատն իշխած երկու թագավորներ, որոնց օրոք նշված է եղել Մամիկոնյանների գաղթը։

Այսպես. X դարի մատենագիր Մեսրոպ երեցի Պատմության խմբագրություններից մեկում, որը մեզ հասել է XIII դարի ձեռագրերում, գաղթը նշված է Արտաշիրի թագավորության օրոք. «Մեր նախնիքն էին թագաւորքն Ճենաս-

---

52 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, էջ 603։

53 Նույն, էջ 407։

54 Jacques de Morgan. Histoire du peuple arménien. Paris, p. 96, 102 և այլն (բերում ենք Մ. Աբեղյանի աշխատությունից)։

55 Տե՛ս Դավիթ Բաղիշեցու ժամանակագրությունը, տպվ. Մանր ժամանակագրություններ, XIII—XVIII դ., կազմեց Վ. Ա. Հակոբյան, հատ. II, Երևան, 1956, էջ 367, ծ. 44։

56 Հ. Մամիկոնյան, Պատմութիւն Տարօնոյ, աշխատ. և առաջաբ. պ. գ. թեկնածու Աշ. Աբրահամյանի, Երևան, 1941, էջ 107—108։

տանեայց և ի զրգռութենէ երկու թագաւորացն Ճենաց, թագաւորեաց Ճենբագուր փոխանակ Վահարու և փախուցեալ նախնեացն մերոց ի հօրեղբօրէ իւրեանց Ճենբագուրայ և եկեալ ի Հայս և եղեն սիրեցեալք յԱրտաշրէ թագաւորէն Հայոց որպէս զնմանիս իւր։ Եւ անուանք երկուց եղբարցն էին այսոքիկ՝ Մամկոն և Կոնակ. և անուանեցան Մամիկոնեանք»[57]։

Վարդան Արևելցին (XIII դ.) Արտաշրի փոխարեն հիշատակում է Արտաշեսին. «Մամակ և Կոնակ փախուցեալք ի Թագաւորէն Ճենբակրոյ եւ եկին առ թագաւորն Հայոց Արտաշես, եւ նա վասն քաջութեանց նոցա կարգեաց զօրավարս Հայոց զնոսին եւ կոչեցան Մամիկոնեանք»[58]։

Վարդան Արևելցու Աշխարհացույցում հանդիպող այս տեղեկությունը, որն ակնհայտորեն ծագում է Մծուրնի արձանագրության հեղինակ Ագաթանգեղոսի գրույցից, միանալով միևնույն հեղինակի «Պատմութիւն Տիեզերականում» հիշատակվող Ագաթանգեղոսի անվան հետ[59], գալիս է հաստատելու ոչ միայն այն փաստը, որ Վարդան Արևելցին ծանոթ է եղել «Սեբեոսի Պատմության» կից հավաքածում պահպանված գրույցին, այլև՝ որ նրա ունեցած ձեռագրում Մամիկոնյանների գրույցը, Արշակի չորս որդիների կապակցությամբ հիշատակվող Ագաթանգեղոսի անվան հետ միասին, գտնվել է միևնույն գլխում։ Իսկ սա իր հերթին նշանակում է, որ Հովհան Տարոնացու հավաքածում ներկա Ա և Բ գլուխներն սկզբում բաժանված չեն եղել առանձին վերնագրերով։ (Այս մասին ավելի հանգամանորեն՝ ստորև)։ Նույնիսկ բնագրի մեզ հասած վիճակում այս գլուխների կապն այնքան սերտ է, որ բանասերները դրանք միասին վերագրել են Ագաթանգեղոսին և հրատարակել են նրա անվամբ։ Այդպես են «Սեբեոսի Պատմության» բոլոր հրատարակությունները, բացի Ստ. Մալխասյանցի հրատարակությունից։ Ֆրանսիացի արևելագետ Վիկտոր Լանգլուան նույնպես մեզ զբաղեցնող ամբողջ բնագրի թարգմանությունը ֆրանսերեն հրատարակել է Ագաթանգեղոսի անվամբ[60]։

Այսպիսով պարզվում է, որ Վարդան Արևելցու օգտագործած ձեռագիրը նույնպես ունեցել է այն միևնույն տեսքը, ինչպիսին որ ունեցել է Սիմեոն Ապարանցու ձեռագիրը, այսինքն՝ Ա և Բ գլուխները գտնվել են Ագաթանգեղոսի անունը կրող միևնույն բնագրում։

Ինչպես տեսանք, Մամիկոնյանների գաղթը որոշակի թագավորների հետ են կապել չորս մատենագիր՝ Մովսես Խորենացին, Մեսրոպ Երեցը, Հովհան Տարոնացին, Վարդան Արևելցին։ Այն հանգամանքը, որ այս մատենագիրներից

57 Մեսրոպ քահանա, Պատմութիւն մնացորդաց Հայոց եւ վրաց, Մադրաս, 1775, էջ 134։

58 Վարդան վարդապետ, Աշխարհացոյց, Քննական հրատարակութիւն Հայկ Պէրպէրեանի, Բարիզ, 1960, էջ 53—54։

59 Տե՛ս Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ Պատմութիւն Տիեզերական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկուա, 1861, էջ 46. «Թագաւորն Պարսից խնդրեաց զսիւնն կենաց, որ ի Մծբին յապարանս արքայութեան հայոց. և յանուլն գտաւ գիր յունարէն, եթէ ես գրեցի Ագաթանգեղոս, զի Մեծն Արշակ ունէր չորս որդիս»։ Վարդան Արևելցու «Ի Մծբին՝ յապարանս արքայութեան Հայոց» արտահայտությունը հաստատում է որոշ բանասերների ենթադրությունն այն մասին, որ սկզբնական բնագրում Մծբինի փոխարեն եղել է Մծուրն։ Մծուրնում է, որ, իրոք, գտնվել է «ապարանք արքայութեան Հայոց»։

60 Տե՛ս Le Pseudo-Agathange. Histoire ancienne de l'Arménie. Extrait de l'Histoire de Héraclius par Sébeos. Traduction de l'arménien, V. Langlois, Collection..., Paris, 1867, p. 195—200.

յուրաքանչյուրն իր սեփական թագավորական անունն է տվել (Տրդատ, Խոսրով, Արտաշիր, Արտաշես) ցույց է տալիս, որ Մամիկոնյանների զրույցի հնագույն սկզբնաղբյուրում, այսինքն ժողովրդական ավանդությունում, որ գրի է առնված Ագաթանգեղոսի անվամբ, գաղթի կապակցությամբ որևէ թագավորի անուն նշված չի եղել և՝ Տրդատ, Խոսրով, Արտաշիր, Արտաշես անուններն արդյունք են հետագա տարբեր պատումների։

Եվ իսկապես, ինչպես տեսանք, Ճենացի դեսպանը Ագաթանգեղոսի հետ զրուցելիս ընդհանուր արտահայտությամբ ասում է, որ Մամիկն ու Կոնակը «կնաւ և որդւովքն իւրեանց և ամենայն աղխիւն իւրեանց» Պարթևաց թագաւորի կողմից ուղարկվեցին «յերկիրն Հայոց առ ազգական իւր արքայն Արշակունի, որ էր թագաւոր Հայաստան երկրին, ուր և սերեալ բազմացան յոյժ, և եղեն յազգ մեծ ի Մամիկոնայ և ի Կոնակայ։ Յայսմանէ այն է սպարապետ»[61]։

Ճենացի դեսպանի հիշատակած անհայտ «արշակունի արքայի» փոխարեն Խոսրով անունը տեղադրել է Հովհան Տարոնացին, հետևելով իրեն հայտնի ինչ որ ավանդության։ Մովսես Խորենացին նույնպես «արշակունի արքա» անորոշ արտահայտության փոխարեն ունի Տրդատի անունը, որը դարձյալ Մամիկոնյանների զրույցի մի այլ վարիանտի արդյունք է։ Մեսրոպ Երեցի գրքում հանդիպող Արտաշիր անունը ավելացված է խմբագրողների կողմից։ Ավելի հին ընդօրինակություններում այդ անունը չկա և այս փաստն ինքնին մի ապացույց է այն բանի, որ Մեսրոպին հայտնի եղած պատումում Արտաշիրի անունը չի եղել։

Այսպիսով չորս հայ պատմիչներ տարբեր ձևերով են ավանդել Մամիկոնյանների զրույցը։ Մովսես Խորենացին շեղվել է նաև նրանով, որ Մամիկոնյանների նախահորը համարում է մեկ մարդ՝ Մամգունին, այնինչ Ագաթանգեղոսի պատմածում երկուսն են՝ Մամիկ և Կոնակ։ Բայց սա, ինչպես Մ. Աբեղյանն է գրել, հատուկ է ժողովրդական վեպին. «Զույգ անունների իբրև մի անձի անուն ընդունվելը, ինչպես՝ Մամ-Կոն Խորենացու մոտ, հատուկ է ժողովրդական վեպին»[62]։ Ն. Ադոնցի[63] և Ա. Մատիկյանի[64] կարծիքով Խորենացին

61 «Յայսմանէ այն է սպարապետ» արտահայտության շուրջ գոյություն ունեն զանազան տեսակետներ։ Բանասերները կարծելով, որ այդ արտահայտությունն աղավաղված է՝ նրա փոխարեն առաջարկել են մի քանի սրբագրություններ։ Այսպես օրինակ, Ն. Ադոնցը արտահայտությունը կապելով նրան նախորդող Կոնակ անվան հետ, բնագիրը վերծանել է՝ «Կոնակայ, յայսմանէ սպարապետէ»։ Ն. Ակինյանը կարդացել է՝ «յայսմ տանէ յանէ սպարապետ» (Այս կարծիքների ամփոփումը տես ՍԵԳ, էջ 172—173, ծան. 18)։ Երկու սրբագրությունն էլ, մեր կարծիքով, բխում են բնագիրը ոչ ճիշտ վերծանելուց։ Այստեղ սրբագրելու կարիք չկա։ Հովհան Տարոնացու օգտագործած սկզբնաղբյուրում նախօրոք հայտնված է եղել, որ Մամիկոնյանները հասարակ մարդիկ չեն, այլ՝ թագավորական ծագում ունեն և ապա ավելացվել է, որ այդ պատճառով էլ, այսինքն՝ ազնվական ծագման պատճառով էլ Մամիկոնյանների ազգն սպարապետ է. «յայսմանէ այն (այս «այն»-ը վերաբերում է Մամիկոնեից ազգին, որի մասին քիչ առաջ հայտնվում էր՝ «եղեն յազգ մեծ ի Մամիկոնայ և ի Կոնակայ») է սպարապետ»։ Ա. Մատիկյանը (Անանուն կամ Կեղծ-Սեբեոս, էջ 54) սրամտորեն նկատել է, որ «այն է սպարապետ» արտահայտության ներկա ժամանակով գործածված լինելը նշան է այն բանի, որ արտահայտության հեղինակը ժամանակակից է սպարապետական ազգին։ «Սեբեոսը», որի ժամանակ այլևս հայ սպարապետական ազգ գոյություն չուներ, չէր կարող գրել «այն է (ազգն է) սպարապետ»։

62 Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական վեպը, Թիֆլիս, 1908, էջ 115։

63 Н. Адонц. Начальная история Армении у Себеоса..., стр. 90.

64 Ա. Մատիկյան, Անանունը կամ Կեղծ Սեբեոսը, Վիեննա, 1913, էջ 53։

ինքն է Մամ և Կոն անունները միացրել, դարձրել մեկ անուն՝ Մամգուն, որպեսզի դրանով ավելի «տարահնչյուն» տեսք տա նրան։

Թվում է՝ բերված փաստերը բավական են, որպեսզի ցույց տան, որ Հովհան Տարոնացու հատվածում քաղվածաբար պահպանված Ագաթանգեղոսի զրույցը հանդիսանում է Մամիկոնյանների զրույցի անդրանիկ գրանցումը հայ պատմագրության մեջ։

Թյուրիմացաբար գտնվելով VII դարում գրված «Սեբեոսի Պատմության» կազմում՝ այն վերագրվել է Սեբեոսին և դրանով բանասիրության մեջ ստեղծվել է մի տեսակետ, որին եթե հավատանք, կստացվի անհավատալի ենթադրությունների մի հանգույց, որի համաձայն՝

1. «Սեբեոսը», իբր ծանոթ չի եղել Խորենացուն և որոշել է առաջին անգամ ընթերցողին հայտնել Մամիկոնյանների զրույցը, 2. «Սեբեոսը» գնացել է Պարսկաստան և գտնվել է մի թագավորի (Խոսրով Ապրվեզի) արքունիքում, որը գահ էր բարձրացել իրենից (այսինքն՝ «Սեբեոսի Պատմության» ստեղծման ժամանակից՝ 661 թ.) ուղիղ յոթանասունմեկ տարի առաջ (590 թ.) և մահացել էր դրանից 34 տարի առաջ (627), 3. «Սեբեոս եպիսկոպոսի» պարսկաստանյան առաքելության մասին ոչ մի տեղ ոչ մի հիշատակություն չի պահպանվել, չնայած, որ այդ մասին առաջին հերթին պարտավոր էր հայտնելու ինքը՝ «Սեբեոսը», որպես իր ժամանակի Հայոց պատմությունը գրող հեղինակ, 4. Չնայած «Սեբեոսի Պատմությունը» գրված է մի այնպիսի ժամանակ, երբ Պարսկաստանում ոչ միայն Խոսրովի արքունիքը գոյություն չուներ, այլև չկային նրանից հետո իշխած մյուս թագավորները և առհասարակ վաղուց վերացված էր պարսից թագավորությունը (երկրում իշխում էին արաբները), բայց և այնպես «Սեբեոսը» պարսից արքունիքում իր լսած զրույցի մասին այնպես է գրում, կարծես թե ինքը դեռ պարսից արքունիքում է գտնվում և դեպքից բաժանված չէ ո՛չ ժամանակով, ո՛չ էլ վայրով։

Եթե բանասերները ուշադրություն դարձնեին «եկեալ էր առ արքայն Խոսրով» արտահայտության վրա՝ կտեսնեին, որ այն կարող էր գործածվել միայն Հայաստանում գտնվող արքունիքի մասին։ Ոչ ոք չի կասկածում, որ «Սեբեոսի Պատմությունը» գրված էր Հայաստանում։ Ուրեմն «եկեալ էր» բառը վերաբերում է միայն և միայն Հայաստանին[65]։

Եվ քանի որ Սեբեոսի ժամանակ Հայաստանում այլևս հայոց արքունիք գոյություն չուներ, մնում էր կռահել, որ արքունիքի մասին խոսող հեղինակը Սեբեոսը չէ, այլ՝ մեկ ուրիշը, որը գտնվել է հայոց Խոսրով թագավորի արքունիքում, որտեղ որ եկել էր ճենաց դեսպանը։

Փոխանակ այս ճիշտ եզրակացությանը գալու և մտածելու, որ «եկեալ էր» արտահայտությունը Սեբեոսին չի հարմարվում, բանասերները որոշել են Սեբեոսին իրե՛ն հարմարեցնել արտահայտությանը և այդ նպատակով Սեբեոսին տարել են Պարսկաստան (որովհետև այնտեղ պատահաբար Խոսրով անունով մի թագավոր է եղել), իսկ դեպքի ժամանակն էլ III դարից տեղափոխել են VII դար։

65 Պարսկաստան գնացած դեսպանի մասին Հայաստանում գտնվող «Սեբեոսը» չէր կարող ասել «եկեալ էր»։ Այս բառը թերևս Պարսկաստանին վերաբերեր միայն այն դեպքում, եթե «Սեբեոսը» նախօրոք հայտնած լիներ, որ ինքը գտնվում էր Պարսկաստանում, որտեղ եկել էր նաև ճենաց դեսպանը։

*Այսպիսի թյուրիմացությունից խուսափելու համար պետք էր նկատել նաև այն փաստը, որ խոսրովի անունը պարունակող արտահայտությունը գտնվում է մի այնպիսի գլխում, որն ամբողջապես վերաբերում է Հայաստանի ամենահնագույն շրջանին և ոչ մի կապ չունի դարեր հետո Պարսկաստանում իշխած խոսրովի թագավորական տան հետ։*

*Հենց այն հանգամանքը, որ քննարկվող հատվածում ոչ մի խոսք չի ասված խոսրովի ազգության, արքունիքի վայրի և գրույցի հեղինակի արքունիքում գտնվելու առիթի մասին՝ ապացույց է այն բանի, որ խոսքը վերաբերում է Հայաստանում կատարված դեպքի և որ գրույցի հեղինակը խոսրովի արքունիքում պաշտոնավարած Ագաթանգեղոսն է, որը ընթերցողին վաղուց արդեն ծանոթ էր որպես արքունի պաշտոնյա։ Մծուրնի արձանագրությունը նա գրել էր «հրամանաւ քաջին Տրդատայ, առեալ ի դիւանէ արքունի» և կարիք չուներ ավելորդ անգամ հիշատակելու, թե ինչու էր ինքը գտնվում իր աշխատավայրում։*

*Պետք է միաժամանակ նկատել, որ «Սեբեոսի Պատմության» հեղինակի նման ճշմարտապատում պատմիչը չէր կարող յոթերորդ դարում հանդես գալ առաջին անգամ Մամիկոնյանների գրույցը լույսի դերում։ Եթե նա նույնիսկ կամենար Մամիկոնյանների մասին իր ասածը ավելի հավաստի դարձնելու համար դիմել ինչ որ կեղծիքի, այդ կաներ իրեն ծանոթ ձևերով։ Հայտնի է, որ նույնիսկ հինգերորդ դարի մեր պատմիչները իրենք հանդես չեն եկել որպես իրենց նկարագրած վաղ ժամանակներին վերաբերող դեպքերի ականատեսներ, այլ իրենց գրածը վերագրել են ուրիշներին։ Այդպես են ստեղծվել Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի, Զենոբ Գլակի (վերջինս՝ ութերորդ դարում) անուններով հայտնի պատմությունները, որոնց հեղինակները իրականում ապրելով ուշ ժամանակներում հանդես են եկել որպես չորրորդ դարի հեղինակներ։ Եթե Սեբեոսն էլ դիմեր այդպիսի մի կեղծիքի՝ ինքն էլ ստիպված կլիներ նույն կերպ վարվելու և կներկայանար վաղ ժամանակներում ապրած մեկի անվամբ։*

## ԶՐՈՒՅՑԻ ԻՐԱԿԱՆ ՀԵՂԻՆԱԿԸ

*Արդ՝ ո՞վ է եղել հինգերորդ դարում ապրած այն հեղինակը, որն առաջին անգամ գրանցել է Մամիկոնյանների գրույցը և որն իր աղբյուր է նշել Մծուրնի արձանագրության հեղինակ Ագաթանգեղոսին։*

*Սա մեր կարծիքով այն միևնույն մատենագիրն է, որին Հովհան Տարոնացին կոչում է Ժամանակագիր, ասելով. «Քանզի զայն ճառէ ժամանակագիրն այդպէս որպէս առաջիդ կայ» (ՍԵՊ, էջ 7)։*

*Սերտ կապ կա այս Ժամանակագրի և Հովհան Տարոնացու հատվածի սկզբում զետեղված այն առաջաբանի միջև, որտեղ հայտնվում է, որ պատմության նյութը վերցված է Մարաբբայի մատյանից[66]։ Այս մատյանում գտնվել*

*[66] «Բանբեր Մատենադարանի» 6-րդ համարում (1963, էջ 52—53) տպագրված մի հոդվածում մենք արդեն ցույց ենք տվել, որ այս առաջաբանը պատկանում է Խորենացուց առաջ ապրած հեղինակին՝ Ժամանակագրին և քաղվածաբար գտնվելով Հովհան Տարոնացու հատվածում՝ մինչև այժմ սխալմամբ ընդունվել է որպես «Սեբեոսի Պատմության» հեղինակի, կամ էլ՝ միայն նրա առաջին դպրության հեղինակի առաջաբան։ Ժամանակագրի այժմ անհետ կորած գրվածքը գտնվել է Հովհան Տարոնացու ձեռքում և ընդարձակ քաղվածքներով, արտագրվել է ներկա հրատարակության Ա և Բ գլուխներում։ Արտագրված քաղվածքների շարքում է, նաև առաջաբանը, որը Հովհան Տարոնացին բերել է իր գրածն ավելի հավաստի դարձնելու համար (Ժամանակագրի*

է Ագաթանգեղոսի արձանագրությունը։ Ուրեմն բնական է ենթադրել, որ Մամիկոնյանների զրույցը նույնպես պետք է գտնվեր Մարաբասի մատյանում, քանի որ պատկանում էր միևնույն հեղինակին՝ Ագաթանգեղոսին։

Մովսես Խորենացին նույնպես Հովհան Տարոնացուն արձագանքող իր նյութերի աղբյուրները կոչել է Մարաբասյան մատյան և Մարաբասին անվանել է ժամանակագիր[67]։ Ուրեմն բավական է՝ պարզել ժամանակագրի անձնավորությունը և ինքնըստինքյան կպարզվի զրույցի հեղինակը։

Մինչ այդ՝ համառոտակի ծանոթանանք ժամանակագրի անձնավորության մասին հայտնված կարծիքներին։

Գր. Խալաթյանցը[68], Ն. Ադոնցը[69], Ստ. Մալխասյանցը[70] և այլք, ելնելով Պարթևաց ապստամբությանը վերաբերող գլխում (ՍԵՊ, էջ 7—11) և IV դարի հույն մատենագիր Եվսեբիոս Կեսարացու ժամանակագրությունում հանդիպող որոշ ընդհանուր տվյալներից, գտնում են, որ «Սեբեոսի Պատմությանը» միացած հատվածի հեղինակը ժամանակագիր ասելով հասկացել է Եվսեբիոս Կեսարացուն։ Ըստ այսմ անտեսվել է այն փաստը, որ Կեսարացուց քաղված տեղեկությունները Պարթևաց ապստամբությանը վերաբերող գլխում քիչ տեղ են կազմում։ Ժամանակագիրը հիմնականում օգտագործել է ուրիշ աղբյուրներ և նրանց հիման վրա է շարադրել հիշյալ գլուխը։

Ն. Մառը[71] և Ն. Ակինյանը[72] ժամանակագրին նույնացրել են Մծուրնի արձանագրության հեղինակ Ագաթանգեղոսի հետ։ Սակայն նրանք չեն նկատել, որ պարթևաց ապստամբությանը վերաբերող գլխում նշված են հինգ այնպիսի թագավորներ, որոնք ապրել են Ագաթանգեղոսից հետո, ուստի և նրանց մասին գրող ժամանակագիրը չի կարող նույնանալ Ագաթանգեղոսի հետ։

Ն. Ակինյանը հետագայում վերանայելով իր կարծիքը, ժամանակագրին նույնացրել է «Դ դարի հույն հեղինակ Փավստոս Բյուզանդացու» հետ[73]։

Սեբեոսին վերագրվող Պատմությանը միացած հատվածում Բուզանդի կրած երկի հետքեր է տեսել նաև բնագրի ուսումնասիրությամբ զբաղված բանասերների մեծամասնությունը (Գր. Խալաթյանց, Ն. Ադոնց, Մ. Անանիկյան, Ա. Մատիկյան, Գր. Տեր-Պողոսյան և այլք)։ Եղել են նաև այնպիսիները (Ն.

---

խոստաբանությունում հայտնվում է այնպիսի մի հեղինակավոր սկզբնաղբյուրի մասին, ինչպիսին է Տրդատ թագավորի հրամանով գրված Ագաթանգեղյան արձանագրությունը)։ Հովհան Տարոնացու ամբողջական երկի մեզ չհասած մասերում հայտնված է եղել, որ մեջբերումները կատարված են ժամանակագրից։ Այս ծանոթագրության կորստյան պատճառով այժմ ժամանակագրի խոստաբանությունը և նրանից քաղված մյուս հատվածները «Սեբեոսի Պատմությանը» բաղկացուցիչ մասերի տպավորություն են թողնում։

67 Մովսես Խորենացին առաջին գրքի IX գլխում ժամանակագրին այսպես է հիշատակում. «Յետ որոյ նոյն ժամանակագիր յառաջ մատուցեալ ասէ»։ Ճիշտ է, Խորենացին ժամանակագիր է կոչել անմիջապես Մարաբասին, իսկ Հովհան Տարոնացին ժամանակագիր ասելով նկատի է ունեցել Մարաբասի մատյանը վկայակոչող հեղինակին, բայց փաստն այն է, որ և՛ Խորենացին, և՛ Հովհան Տարոնացին Մարաբասյան աղբյուրը նշել են միևնույն ժամանակագիր մականվամբ։

68 Гр. Халатянц, Армянский эпос в Истории Моисея Хоренского, Москва, 1896, часть I, стр. 85–89.

69 Н. Адонц, Начальная история Армении, стр. 75—76.

70 ՍԵՊ, էջ ԼԲ, 168։

71 Н. Я. Марр, О начальной истории Армении..., стр. 281.

72 Ն. Ակինյան, Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց և իւր Պատմութիւնն ի Հերակլն.— «Հ. Ամս.», 1923, էջ 403—415։

73 Ն. Ակինյան, Սեբէոսի «Ժամանակագիրն» և Փ. Բիւզանդեայ Ա. պատմութիւնք.— «Հ. Ամս.», 1938, էջ 46, 50։

*Մառ, Հ. Թոփչյան, Կ. Տեր-Սահակյան և ուրիշներ), որոնք հատվածն ուղղակի նույնացրել են Բուզանդի կորած դպրությունների հետ։*

*Այս ենթադրությունները բխել են այն ակնհայտ փաստերից, որոնք անառարկելի են դարձնում Փավստոս Բուզանդի և Հովհան Տարոնացու հատվածի միջև գոյություն ունեցող կապը։*

*Փաստերից կարևորագույնը վեցերորդ դարի բյուզանդացի պատմիչ Պրոկոպիոս Կեսարացու վկայություններն են, որոնց «Սեբեոսի Պատմությանը» միացած հատվածի կապակցությամբ, առաջին անգամ անդրադարձել է Նիկողայոս Ադոնցը[74] և ապա՝ Ա. Մատիկյանը[75], Ն. Ակինյանը[76] և ուրիշներ։*

*Պրոկոպիոսն իր «Վասն պարսկական պատերազմին» աշխատության[77] մեջ Հայոց Արշակ Բ թագավորի մասին բերում է մի պատմություն (Արշակի Պարսկաստան կանչվելը, հայկական հողի վրա ըմբոստանալը, Անհուշ բերդում բանտարկվելը և սպանությունը), որը քաղված է Փավստոս Բուզանդի «Հայոց պատմության» հինգերորդ դպրության ԾԲ, ԾԴ գլուխներից։*

*Իր օգտագործած սկզբնաղբյուրը Պրոկոպիոսն անվանում է «Հայոց պատմություն», առանց Փավստոս Բուզանդի անունը տալու։ Բայց մենք գիտենք, որ հինգերորդ դարում «Հայոց պատմություն է» կոչվել հատկապես Փավստոս Բուզանդի Պատմությունը։ Ղազար Փարպեցին իրենից առաջ գրված պատմական երկերը թվարկելիս միայն Փավստոս Բուզանդի մասին է ասում, որ նրա գիրքը կոչում են Հայոց պատմություն. «զոր անուանեալ կոչեն զանուն գրոցն Հայոց պատմութիւն»[78]։*

*Պրոկոպիոսը Փավստոս Բուզանդի անվան փոխարեն նշել է գրքի անունը։ Հնում երբեմն սովորություն է եղել գրքերը կոչել միայն անվամբ, առանց հեղինակների անունների։ Այդպես են կոչվել «Գիրք Գրիգորիսի» (Ագաթանգեղոս), «Պատմութիւն հայոց» (Փ. Բուզանդ), «Պատմութիւն Աղուանից» (Մ. Կաղանկատվացի), «Պատմութիւն Ներսէսի» (Մեսրովպ Վայոցձորեցի), «Նարեկ» (Գրիգոր Նարեկացի) և այլն։*

*Փավստոս Բուզանդի երրորդ դպրությանը նախորդող խոստաբանության մեջ գիրքը կոչված է «յիշեցուցիչք պատմութեանց ազգացն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ»[79]։ Չորրորդ դպրությունը նույնպես կոչվում է «Ժամանակագիր մատեանք տան որդւոց Թորգոմայ աշխարհին Հայոց»[80]։ Հինգերորդ դպրության վերնագիրն է՝ «Ժամանակագիր մատեանք տան որդւոցն Թորգոմայ իշխանին (կարդա՝ «աշխարհին»—Գ. Ա.) Հայոց»[81]։ Իսկ վեցերորդ դպրությանը՝ «Ժամանակագիր մատեանք»[82]։ Այսպիսով բոլոր դպրությունների վրա կրկնված է եղել «Ժամանակագիր մատեանք հայոց» բառերը, որոնք ուրիշ*

---

74 Н. Адонц, Начальная история Армении..., стр. 93—95.

75 *Ա. Մատիկյան, Անանուն կամ Կեղծ-Սեբեոս, Վիեննա, 1913, էջ 17—25։*

76 *Ն. Ակինյան, Սեբեոսի «Ժամանակագիրն»... «Հ. Ամս.», 1938, էջ 42—50։*

77 Procopius, vol., I, 5. Corpus scriptorum historiae Byzantinae, Paris, II, Bonnae, 1833. *Հայոց Արշակ Բ թագավորին վերաբերող հատվածի թարգմանությունը տե՛ս Մատիկյանի նշված աշխատութ. 18—22 էջերում։*

78 *Ղ. Փարպեցի, Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1904, էջ 1։ Հմմտ. Ա. Մատիկյան, նշվ. աշխ., էջ 24։*

79 *Փավստոս Բուզանդացի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ Ե։*

80 *Անդ, էջ 101։*

81 *Անդ, էջ 277։*

82 *Անդ, էջ 389։*

*բան չէին կարող նշանակել, քան՝ «Հայոց պատմություն»։ Ըստ որում «Մատյան» բառը անպայման մատնանշել է գրավոր պատմություն և այդ գրավոր իմաստի հետքերը պահպանվել են նաև Պրոկոպիոսի հիշատակած վերնագրում՝ «ἡ τῶν Ἀρμενίων συγγραφή», որը նշանակում է գրավոր պատմություն*[83]*։*

*Բուզանդի գրքում ամենուրեք, որտեղ գրված է «Ժամանակագիր մատյանք հայոց» դրանից առաջ նշված է բոլորի համար մեկ ընդհանուր խորագիր. «Բուզանդարան պատմութիւնք»։*

*Սա նշանակում է, որ Բուզանդարանն ընդհանուր վերնագիր է եղել բոլոր դպրությունների համար և որ՝ «Ժամանակագիր մատյանք հայոց»-ի մեզ հասած մասը կապված է «Բուզանդ» անունով (կամ՝ «բուզանդ» բառով) ստեղծված Փավստոս Բուզանդ անձնանվան հետ, որի հետևանքով և այս Պատմությունն այժմ հայտնի է որպես Փավստոս Բուզանդի Բուզանդարան*[84]*։*

*Ղազար Փարպեցու և Պրոկոպիոս Կեսարացու վկայություններից երևում է, որ Փավստոս Բուզանդի անունը կրել են միայն մեզ հասած դպրությունները, իսկ նախորդ երկու դպրությունները ներկայացված են եղել ուրիշ հեղինակների անուններով։ Դրանով պետք է բացատրել այն փաստը, որ Փարպեցին Փավստոս Բուզանդի Պատմություն ասելով հասկացել է միայն մեզ հասած դպրությունները։ Իսկ Պրոկոպիոսը, որ օգտվել է նաև նախորդ դպրություններից, բավականացել է ամբողջ «Բուզանդարանի» համար ընդհանուր «Հայոց պատմություն» արտահայտությամբ և այն չի կապել միայն Փավստոսի անվան հետ։*

*Պրոկոպիոսի օգտագործած Բուզանդարանի (որը նա կոչում է «Հայոց պատմություն») առաջին դպրությունների բովանդակությունը*[85] *համընկնում է Հովհան Տարոնացու հատվածում պահպանված Պարթևաց պատմության վերաբերող գլխին։ Իսկ սա իր հերթին, ինչպես տեսանք, քաղված է Ժամանակագրից։ Այսպիսով Պրոկոպիոսի միջոցով պարզվում է, որ Ժամանակագիրը նույն ինքը Բուզանդարանի հեղինակն է։*

*Հովհան Տարոնացու հատվածից երևում է, որ Բուզանդարանի առաջին դպրությունները կրել են Մարաբա Մծուրնացու անունը («Անդ հայելով ի մատեանն Մարաբբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ...»)։*

*Ինչպես տեսանք՝ Ագաթանգեղոսի արձանագրությունը, Մամիկոնյանների գրույցը, Պարթևաց Արշակ թագավորին վերաբերող հատվածը և առհասարակ Հովհան Տարոնացու հատվածում պահպանված երկու առաջին գլուխների նյութը ամբողջապես վերցված է Մարաբայի մատյանից։ Եթե նկատի ունե-*

83 *Հմմտ. Ա. Մ ա տ ի կ յ ա ն, նշվ. աշխ., էջ 23, 24։*

84 *«Բուզանդարան» բառը բացատրելու ուղղությամբ կատարված փորձերից առավել կարևորներն են Ն. Բյուզանդացու (Քննասէր, Ա, էջ 21—22), Ստ. Մալխասյանցի (Փավստոս Բուզանդի աշխարհաբար թարգմանությունը, Երևան, 1947, էջ 309—310) և Հ. Անասյանի (Բուզանդարանի ռուսերեն թարգմանությունը, Երևան, 1954, էջ 5) փորձերը, որոնց ընդհանուր հայտարարն այն է, որ «Բուզանդարանը» հավաքական իմաստ ունի։ Նորայր Բյուզանդացին ենթադրել է, թե Բուզանդարանը եղել է երեք տարբեր բուզանդների երկերի մի հավաքական տուփ, որից «ստար ամն հասած է… միայն գԳ, գԴ, գԵ և գԶ դպրությունները»։ Ստեփանոս Մալխասյանցը գտնելով, որ Բուզանդ նշանակում է «գրույց», «պատմություն», Բուզանդարանը համարել է բուզանդների ժողովածու։ Հակոբ Անասյանը Բուզանդարան բառի մեջ տեսել է հեղինակի «Բուզանդ» անունով և «րան» մասնիկով կերտված մի բառ, որ դարձյալ նշանակում է Բուզանդների ժողովածու։*

85 Procopius, vol. III, De Aedificiis, III, 1. ***Մեզ հետաքրքրող հատվածի գրաբար թարգմանությունը տես Ա. Մատիկյանի նշվ. աշխ. 22—23 էջերում։***

նանք, որ Հովհան Տարոնացին կատարել է միայն Մարաբայի մատյանի համառոտագրությունը, բերել է քաղվածքներ նրանից՝ ապա կարելի է պատկերացնել, թե որքան ընդարձակ ծավալ պետք է ունենար այս մատյանը առաջին երկու դպրություններում։ Հետևաբար բնական է, որ մի ծավալուն գիրք պետք է կոչվեր իր սկզբնաղբյուրի՝ Մարաբա Մծուրնացու անվամբ, ինչպես որ երրորդից վեցերորդ դպրությունները կոչված են Փավստոսի անվամբ։

Բուզանդարանի մեզ հասած դպրությունների առաջաբանի երրորդ դպրության սկզբում զետեղված լինելը նույնպես նշան է այն բանի, որ երրորդ դպրությամբ սկսվել է մի առանձին ժողովածու, այլապես՝ հարկ կլիներ առաջաբանը և «կատարեցաւ»-ը կրկնել յուրաքանչյուր դպրությունից առաջ և հետո։

Վերջապես մեզ հասած Բուզանդարանի առանձին ամբողջություն լինելու մասին են խոսում նաև երրորդ դպրության սկզբում գրված «իսկիզբն» և վեցերորդ դպրությանը կից «վերջ» բառերը, որոնք վկայում են, որ սկսվել և վերջացել է մի ամբողջություն։

Մի այլ հանգամանք, որը ցույց է տալիս, որ Բուզանդարան ժողովածուն ներկայացված է եղել մի քանի հեղինակների անուններով։ Այսպես. մանրակրկիտ զննությունից երևում է, որ Բուզանդարանը կազմված է Հին և Նոր կտակարանների որոշ գրքերի օրինակով։ Այդ երևում է Բուզանդարանի մի շարք մանրամասնություններում։ Համեմատենք, օրինակ, Բուզանդարանի առաջաբանի և ավետարանների առաջ զետեղված Եվսեբիոսի առ Կարպիանոս թղթի հետևյալ հատվածները.

**Ավետարան**

Կանոնս տասն թուով գրոշմեցի...

Ի վերայ իւրաքանչիւր չորեցունց աւետարանացն թիւ ինչ առընթեր կայ ըստ իւրաքանչիւր մասին... մինչև ցկատարած գրոցն։

**Բուզանդարան**

Կարգօք, թուօք և համարօք կանոնեալ գրոշմեալ նկարեցի իւրաքանչիւր գլխովք։ Եւ չորս խոստմունս չորից չորեցունց դպրութեանցս յիւրաքանչիւր գլուխս պատուաստեցի մինչև ի կատարած սորին[86]։

Այստեղ գործ ունենք երկու սկզբնաղբյուրների ակնհայտ կապի հետ։ Այդ կապը ցույց տվող պակաս նշանակալի փաստ չէ նաև «Ավետարան» և «Բուզանդարան» բառերի համանման կառուցվածքը։

Հայ մատենագրության որոշ հուշարձաններում պահպանվել են տեղեկություններ, որոնց համաձայն Բուզանդարանը հնում հայտնի է եղել նաև «Հայոց մնացորդաց պատմութիւնք» անունով[87]։ Սա ևս Բուզանդարանի և ս. գրոց ազերսը ցույց տվող մի կարևոր փաստ է։

Հայտնի է, որ Բուզանդարանը գրվել է Հայոց պատմության վերաբերող մի քանի սկզբնաղբյուրներից հետո և պարունակում է այնպիսի նյութեր, որոնք նախորդ պատմիչները բաց են թողել։ «Է ինչ մեր պատմութիւն,—գրում

---

86 Փավստոս Բուզանդ, Խոստարանութիւն նախադիտելի։

87 Հմմտ. Библ. Ленинград. отд. ИНА АН СССР, колл. Орбели, С-59, стр. 3˘66. Վիեննա, Մխիթ. մատ., ձ. № 349 (107), թ. 93—94։ Այս փաստը մենք մանրամասն քննության ենք ենթարկել Փավստոս Բուզանդին նվիրված մեր անտիպ ուսումնասիրությունում, որը վերաբերում է Բուզանդարանի ստեղծման ժամանակին, աղբյուրներին, նախնական բնագրին, երական հեղինակին և այլ առնդծվածների։

է Բուզանդարանի հեղինակը երրորդ դպրության առաջաբանում,—որ առաջին է, և է ինչ, որ վերջին է, իսկ որ միջին ինչ եղև, այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ»: Ուրեմն ինչ որ «ի ձեռն այլոց գրեցաւ»՝ հեղինակը դրանց չի անդրադարձել, այլ գրել է ուրիշների կողմից չգրված պատմությունը:

Ճիշտ միևնույն ծրագիրն է հայտնված եղել նաև Բուզանդարանի կորած դպրություններում, որոնց առաջաբանը քաղվածաբար պահպանվել է Հովհան Տարոնացու հատվածում: Այստեղ կարդում ենք. «Եւ եղև ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի զանստորագրեալ ժամանակ և զնախնի քաջացն ձեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս, զիմն յիշատակել զառասպելս, և ի նոյն շարադրելով ասացից զաւ ի յապայսն եղելոյ...»[88]: Այստեղ ևս հեղինակը կրկնում է Բուզանդարանի վերոհիշյալ այն միտքը, որ ինքը գրելու է ուրիշների կողմից չնկարագրված ժամանակը («զանստորագրեալ ժամանակ»):

Աստվածաշնչի Մնացորդաց գրքերը նույնպես «Հայոց մնացորդաց պատմութեանց» (Բուզանդարանի) նման, գրված են Հին կտակարանի մյուս գրքերից համեմատաբար ավելի ուշ և պարունակում են այդ գրքերից դուրս մնացած պատմական հիշատակարանների մնացորդներ, որից և ստացել են «Մնացորդաց գիրք» անունը:

Պատահական չէ նաև այն, որ Հին կտակարանի Մնացորդաց գրքերը եբրայեցերեն սկզբնագրում կոչված են ճիշտ այնպես, ինչպես որ Բուզանդարանը՝ այսինքն՝ երկուսն էլ կոչվում են «Ժամանակագիր մատյանք» եբրայեցերեն՝ «Դաբիրի հայամամ»[89]:

Մենք ուզում ենք այս նույն օրինաչափությունը տեսնել նաև այն բանում, որ Բուզանդարանի հեղինակը, շեղվելով ընդհանուր սովորությունից, իր գրքերը նշել է «դպրություն» բառով, որը ոչ այլ ինչ է, եթե ոչ՝ եբրայեցերեն «դաբիրի» բառի հայերեն թարգմանությունը: Աստվածաշնչի եբրայեցերեն բնագրում, օրինակ, Սամուելի ժամանակագրությունը կոչվում է «դաբիրի Սամուայլ», ինչպես, որ Բուզանդի ժամանակագրությունը՝ «դպրութիւն Բուզանդեայ»:

Եվ այսպես, Բուզանդարանի հեղինակը, նույն ինքը՝ ժամանակագիրը, ս. գրոց օրինակով իր գիրքը ներկայացրել է տարբեր հեղինակների անուններով՝ Ագաթանգեղոս, Մարաբբա Մծուրնացի, Փավստոս Բուզանդ[90]: Եվ այս

88 ՍԵԳ, էջ 1:

89 Տպագրական բարդություններից խուսափելու համար եբրայեցերեն բառերը բերում ենք հայերեն տառադարձությամբ: «Դաբիրի հայամամ»-ի եբրայեցերեն գրությունը վերցրել ենք Հին կտակարանի եբրայեցերեն բառարանից (Carl Siegfried und Bernhard Stade, Hebräisches Wörterbuch zum Alten Testamente, Leipzig, 1893, p. 134, 909): Եբրայեցերեն բնագրում «դաբիրի» բառը «ժամանակագիր մատյան» իմաստով (կամ ինչպես Աստվածաշնչի հայերեն թարգմանիչներն են կոչել «Գիրք բանից աւուրց») գործածված տե՛ս նաև՝ Երրորդ գիրք Թագավորությանց, գլ. ԺԴ, տուն 29 (հմմտ. Hebräisches Wörterbuch, p. 134) և այլուր:

Հետաքրքրական է նշել, որ հայ թարգմանիչները Սամուելի, Յեհուի և այլոց ժամանակագրությունները թարգմանել են «բանք» (փխ. «Օրագիր», «ժամանակագիր») բառով: Այսպիսով «բան» բառը հայ մատենագիտության մեջ գործածված ենք գտնում նաև գրքի, գրավոր խոսքի իմաստով (հմմտ. «գրեալ են ի բանս Սամուէլի տեսանողի»: Առաջին մնացորդաց, ԻԹ, 29):

90 Ինչպես երևում է, Բուզանդարանի հեղինակը պատահաբար չէ գործածել հայերենի համար անսովոր Ագաթանգեղոս, Մարաբբա, Բուզանդ անունները: Սրանցից յուրաքանչյուրի ետևում ըստ երևույթին թաքնված է մի ինչ որ իմաստ: Գիտենք, որ «Ագաթանգեղոս» նշանակում է «բարի հրեշտակ», «Բուզանդ»-ը, ըստ Ստ. Մալխասյանցի, «զրույց»: Հավանաբար մի իմաստ պետք է ունենա նաև Մարաբբա անունը:

ամենը զետեղել է մի ընդհանուր ժողովածուի մեջ, որը կոչել է «Բուզանդարան». ինչպես, ասենք՝ «Աւետարան», որը պարունակում է չորս հեղինակի գործեր։ Իսկ «Բուզանդարան» նշանակում է «զրուցարան», «ավանդությունների, պատմությունների գիրք», ինչպես, որ ցույց է տվել ակադեմիկոս Ստեփան Մալխասյանցը՝ Փավստոս Բուզանդի աշխարհաբար թարգմանության ծանոթագրությունների մեջ (էջ 309—310)։

Բուզանդարանը իրոք ժողովրդական զրույցներից բաղկացած պատմությունների մի ժողովածու է, ուստի և բնականաբար պետք է կոչվեր «զրուցարան»։ Այս հաստատվում է նաև «Սեբեոսի Պատմությունում» պահպանված՝ Բուզանդարանի ընդհանուր առաջաբանից, որտեղ բառացի հայտնվում է, որ ժողովածուի նյութը քաղված է վիպասանություններից, առասպելներից («...դրոշմել վիպասանութիւնս, զիմն յիշատակել զառասպելս»)։

Հայտնի է, որ հայ դպրության առաջին դարերում մեծ ծավալ ունեցող ժողովածուները միևնույն կազմի մեջ տեղավորելը անհնարին էր։ Տառերի խոշոր գրությունը և մագաղաթը գրքերի ծավալը կհասցնեին անգործնական մեծության։ Դրա համար էլ սովորություն է եղել ժողովածուներն ընդօրինակել առանձին-առանձին հատորներով։ Դա վերաբերել է նաև Աստվածաշնչին, որը միայն համեմատաբար ավելի ուշ ժամանակների ձեռագրերում ենք տեսնում ընդօրինակված միևնույն կազմի մեջ։ Այս տեսակետից էլ անհավանական չի լինի ենթադրել, որ Մարաբայի մատյանը և Փավստոս Բուզանդի դպրությունները, միևնույն ժողովածուի մասեր լինելով հանդերձ, ընդօրինակված են եղել առանձին հատորների մեջ։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ Ղազար Փարպեցին օգտվելով Փավստոս Բուզանդի գրքից, (որը նա կոչում է «Հայոց պատմություն»)[91] անծանոթ է մնացել նրա նախորդ երկու դպրություններին։

Մարաբայի մատյանը Բուզանդարանի կազմում է գտնվել նաև X դարի մատենագիր Մեսրոպ Վայոցձորեցու ունեցած ձեռագրում։ Մամիկի և Կոնակի մասին այս հեղինակը հայտնում է այնպիսի տեղեկություններ, որոնց մի մասը գալիս է Բուզանդարանի մեջ հասած դպրություններից, իսկ մյուս մասն արձագանքում է Հովհան Տարոնացու հատվածում պահպանված Մարաբրայան մատյանին։ Այսպես՝

| Բուզանդարան (դպր. Ե, գլ. ԼԵ), *Մարաբայան մատյան (ՍԵՊ, էջ 12—13)* | Մեսրոպ Վայոցձորեցի *(Սոփերք հայկականք, հ. Զ, էջ 120—121)* |
| --- | --- |

[91] Անհետաքրքիր չի լինի նշել, որ «Հայոց պատմություն» կոչվող մի գիրք էլ գտնվել է XI դարի վրաց պատմիչ Լեոնտիոս Մռովելու (Լեոնտի Մրովելի) ձեռքին։ Նա «Վրաց թագավորների և նախահայրերի պատմություն» գրքում խոսելով Տրդատի քաջությունների մասին, իր աղբյուրը կոչում է «Հայոց Պատմություն» (տես Լեոնտիոս Մռովելու երկի հատվածական թարգմանությունը՝ կատարված Մելիքսեթ-բեկի կողմից՝ «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Երևան, 1934, էջ 167)։ Որոշ բանասերներ Լեոնտիոսի նշած «Հայոց պատմությունը» նույնացրել են Ագաթանգեղոսի Պատմության հետ (Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ի, ძველი ქართული საისტორიო მწერლობა (V–XVIII სს.), თბილისი, 1916, էջ 125, Մ ե լ ի ք ս ե թ - բ ե կ, նշվ. աշխ. և այլն), չնկատելով, որ Մռովելուն Ագաթանգեղոսի պատմության համար օգտագործում է բոլորովին այլ անուն. «Վկայության գիրք» կամ՝ «Հայոց դարձի պատմություն» (տե՛ս Մ ե լ ի ք ս ե թ - բ ե կ ի թարգմանությունը, էջ 172)։ Արդյոք Մռովելու հիշատակած «Հայոց պատմությունը», որը վերաբերել է հայոց առաջին թագավորներին, ինչ որ կապ չի՞ ունեցել Բուզանդարանի կորած դպրությունների հետ։

Մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր... Մեր նախնիքն լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց... *Փախստական լեալ Մամիկն և Կոնակն գնան առ արքայն Արշակունի... և եղեն յազգ մեծ ի Մամիկայ և Կոնակայ...*

Ազգն Մամիկոնէից ոչ են կացեալ ծառայք ձեր, այլ՝ ընկերք: Եւ նախնիք մեր՝ թագաւորքն Ճենաց... *Փախեան երկու որդիք Թագաւորին Ճենաց ...եւ եկեալ բնակեցան յաշխարհիս Հայոց... Որոց անուանք նոցա, անդրանկանն Մամ և երկրորդին Կոն յորջորջիւր և ի նոցուն անուանեցան Մամիկոնք...*

*Ինչպես տեսնում ենք, ընդգծված տողերը քաղված են մեզ հասած Բուզանդարանից, իսկ շարունակությունը՝ Հովհան Տարոնացու մոտ պահպանված հատվածի պատումներից է։*

*Հայ և օտար մատենագիրների երկերում հանդիպող տեղեկություններից երևում է, որ Մարաբայի մատյանի կորուստը տեղի է ունեցել ոչ այնքան էլ վաղ ժամանակներում։ Տեսանք, որ նրանից օգտվել են Մովսես Խորենացին, Պրոկոպիոս Կեսարացին, VII դարի Աշխարհացույցի հեղինակը, Սեբեոս Վայոցձորեցին, Հովհան Տարոնացին և Վարդան Արևելցին։ Հնարավոր է, որ Մարաբայի մատյանից օգտված լինեն նաև բուն «Սեբեոսի Պատմության» հեղինակը[92], Թովմա Արծրունին[93], վրաց պատմիչ Լեոնտիոս Ռուխեցին և ուրիշներ։*

*Նրա գոյության մասին տեղեկություն ենք գտնում նաև XVIII դարի սկզբներին կազմված մի մատենագիտական ցանկում, որը գտնվում է Մաշտոցի անվան Մատենադարանի № 2271 և 2220 ձեռագրերում և կրում է «Պատմագիրք հայոց» վերնագիրը[94]։*

*Այս ցանկում հանդիպող տեղեկությունը Բուզանդարանի մասին շատ կարևոր է, ուստի փոքր ինչ հանգամանորեն անդրադառնանք ցանկին։*

*Սա մի արժեքավոր աղբյուր է, որի հեղինակը երբեմն հայտնում է այնպիսի տեղեկություններ, որոնք այլուր չեն պահպանվել։ Մենք արդեն նշել ենք («Բանբեր Մատենադարանի, № 4, 1958, էջ 72) «Պատմութիւն վասն ազգին Նետողաց» երկի (13-րդ դ.) իրական հեղինակի անվան (Գրիգոր Պատմիչ) այս ցուցակում պահպանված լինելու փաստը։ Միայն այստեղ է պահպանվել*

---

92 *Գր. Խալաթյանցը* (Арм. эпос в Истории М. Хоренского, 1896, стр. 58—105), *Ստ. Մալխասյանցը (Սեբեոսի Պատմությունը և Մ. Խորենացի, Թիֆլիս, 1899), Ն. Ակինյանը (Սեբիոս եպս. Բագրատունեաց, Ազգ. մատենադարան, Վիեննա, 1924, էջ 66—72) համոզիչ փաստերով ցույց են տվել բառապաշարի և ոճադարձական հնարքների ընդհանրությունը մի կողմից Մարաբայի և Փավստոսի մատյանների, մյուս կողմից «Սեբեոսի Պատմության» մեջ, որոնցից երևում է, որ «Սեբեոսի Պատմության» հեղինակն իր ձեռքի տակ ունեցել է Բուզանդարանի բոլոր դպրությունները, որոնց բառապաշարի և ոճի խիստ ազդեցության տակ է ինքը։*

93 *Հմմտ. Թ. Ա ր ծ ր ու ն ի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ, 1887, էջ 23. («Նուն դու, և երամակ շանց, որ գկնի քո տողեալ սահին») և ԱՍՊ, էջ 4 («Նուն ես դու և յերամակէ շանց՝ դու և ժողովուրդ քո»)։*

94 *«Պատմագիրք հայոց» խորագիրը կրող ցանկն առաջին անգամ տպագրվել է «Ազդարարում» (Մադրաս, 1795, էջ 188—192), ապա՝ «Հանդէս ամսօրեայ»-ում (1952, էջ 55—63։ Արտարտապություն տե՛ս Ն. Ա կ ի ն յ ա ն, Բաղէշի դպրոցը, Վիեննա, 1952, էջ 294—307) և Հ. Ա ն ա ս յ ա ն, Հայկական մատենագիտություն, Երևան, 1959, էջ* LIII—LVII։ *Այս ցանկից սորև բերվող օրինակները տեսնել նշված հրատարակությունների էջերում։*

նաև VII դարում գրված «ժամանակական կանոնի» հեղինակ Անանիա Շիրակացու անունը[95]։

Թե որքան ստույգ են այս երկու տեղեկությունները՝ ցույց տվեցին հետագա բանասիրական ուսումնասիրությունները, որոնք պարզեցին, որ նշված երկերն իսկապես պատկանում են այն մատենագիրներին, որոնց նշել է «Պատմագիրք հայոց»-ի հեղինակը։

Արժեքավոր է նաև Մխիթար Անեցուն վերաբերող տեղեկությունը։ «Պատմագիրք հայոց»-ի հեղինակը գրում է. «Մխիթար Յանեցի, որ է Պատմութիւն Յանւոյ քաղաքին»: Առաջին անգամ և միայն այստեղ է պահպանվել տեղեկություն այն մասին, որ Մխիթար Անեցին գրել է Անի քաղաքի պատմությունը։

Այս երկը մինչև այժմ բանասիրությանը հայտնի չէ։ Բայց մեզ թվում է դա Մաշտոցի անվան Մատենադարանի №№ 7584 և 3079 ձեռագրերում պահպանված այն բնագիրն է[96], որն ունի իսկ և իսկ «Պատմագիրք հայոց»-ում նշված խորագիրը (ներառյալ «Յանւոյ» արտասովոր ձևը)՝ «Պատմութիւն քաղաքին Յանւոյ»։ Այստեղ նշված վերջին դեպքը վերաբերում է 1236 թվականին[97]։ Հայտնի է, որ Մխիթար Անեցին ապրել է Սամվել Անեցուց հետո և Վարդան Արևելցուց առաջ։ Սամվել Անեցին իր երկն ավարտում է 1166 թվականին, իսկ Վարդանը՝ 1270 թ.։ Ուրեմն 1236 թվականը համընկնում է Մխիթար Անեցու ապրած ժամանակին[98]։

Այս ևս մի փաստ է, որը հայտնի է դառնում «Պատմագիրք հայոց»-ի միջոցով և խոսում է այդ ցանկը կազմող հեղինակի ունեցած ձեռագրերի հազվագյուտության և մեծ արժեքի մասին։

Հանձին «Պատմագիրք հայոց» ցանկի հեղինակի մենք ունենք հայ մատենագրությանը քաջատեղյակ մի մասնագետ[99]։ Բնագրերը նշելիս նա աղբյուրագիտական վերլուծության է ենթարկում դրանք։ Այսպես, օրինակ, Ագաթանգեղոսի պատմությանն անդրադառնալիս նա Դաշանց թղթի մասին գրում է. «Բայց դաշանցն սիրո և միաբանութեան զգոյշ պարտ է լինել, զի ի հին

---

95 Մաշտոցի անվան Մատենադարանի № 6228 ձեռագրում (XIX դ.) նույնպես «Ժամանակական կանոնի» հեղինակ է նշված Անանիա Շիրակացին (թ. 79ա)։ Բայց այս տեղեկությունը վրիպել է ժամանակագրության հրատարակողների (Բ. Սարգիսյան, Աշ. Աբրահամյան) ուշադրությունից։ Ի դեպ՝ № 6228 ձեռագրի մասին բանասիրության մեջ գոյություն ունեցող կարծիքը (Աշ. Աբրահամյան, Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 104, 142, 357։ Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հ. Ա, էջ 745, 754, 757—758) ենթակա է ճշգրտման։ Ձեռագիրը սխալմամբ համարվել է ընդօրինակություն հայկական ամենահին (չուրջ հազարամյա) թղթյա ձեռագրից (Մաշտոցի Մատենադարան, ձ. № 2679), սակայն ուսումնասիրությունից պարզվում է, որ այն ընդօրինակված է Վենետիկի Մխիթարյան Մատենադարանի № 218 (739) ձեռագրից, որը 1835 թ. արտագրություն է։

96 № 7584 և 3079 ձեռագրում «Պատմութիւն քաղաքին Յանւոյ» երկն ընդօրինակված է երկու այլ բնագրերի հետ միասին, որոնք կարող են մի ընդհանուր երկի պատմություն թողնել։ Հ. Ս. Անասյանի «Հայկական մատենագիտությունում» (հատոր Ա, 1959, էջ 894) այս երկի կապակցությամբ ձեռագրերից բերված էջերը պետք է ուղղել այսպես. «№ 7584, էջ 348ա—349բ, № 3079, էջ 253ա-բ (թերի)»։

97 Ձեռագրում՝ «ՋՃՁէ», պետք է ուղղել «ՋՃՁԵ»։ Ընդօրինակող գրիչը «Ե»-ի փոխարեն ընդօրինակել է «է»։ Անիի գրավումը տեղի է ունեցել ՋՃՁԵ (=1236) թվականին։

98 Մխիթար Անեցու նորահայտ երկին մենք մանրամասն կանդրադառնանք առանձին հոդվածով։

99 Ն. Ակինյանը «Պատմագիրք հայոց» ցանկի հեղինակ է համարել XVIII դ. անվանի գիտնական Վարդան Բաղիշեցուն։ Սակայն մենք ցույց ենք տվել («Բանբեր Մատենադարանի», № 4, էջ 72—75), որ այս ենթադրությունը հիմք չունի։

օրինակսն ոչ ուրէք գտանի, այլ ի նորագոյնս՝ աղթարմայից բազում ինչ ըստ իւրեանց ախորժակացն շարադրեալ խորամանկութեամբ նենգի»։ Եվ իսկապես, ինչպես հայտնի է, Դաշանց թուղթը հետագա ժամանակի ներմուծում է Ագաթանգեղոսի պատմության մեջ։ Եպիփան Կիպրացու երկերի կապակցությամբ ցանկի հեղինակը հայտնում է. «Բայց գիտելի է, զի գիրք մի ևս անուամբ սորին գտանի խառն ճառից ընդ պատմութեանցս, յորս գտանին բանք հերձուածողաց և շաղփաղփութիւնք յոլովք»։

Այնպիսի դեպքերում, երբ հեղինակը հայ մատենագիրների այս կամ այն երկը նշելիս՝ դրանք չի ունեցել ձեռքի տակ կամ առհասարակ չի տեսել, այդպիսի դեպքերում նա նշում է այն աղբյուրը, որտեղից քաղել է տեղեկությունը։ Օրինակ, գիտենք, որ Մովսես Խորենացին երկրորդ գրքի ԼԹ գլխում հայտնում է, որ իրենից առաջ ուրիշները գրել են առաքյալների պատմությունը («յառաջագոյն գրեալ յայլոց... կատարումն Առաքելոյն և որք ընդ նմա»)։ Այս գիրքը, սակայն, մեզ չի հասել, դրա համար էլ «Պատմագիրք հայոց»-ի հեղինակը գիրքը նշելով հանդերձ գրում է, որ այդ տեղեկությունը ինքը քաղել է Մովսես Խորենացուց. «Պատմութիւնք սրբոց առաքելոցն, որք ի Հայս կատարեցան, որպէս վկայէ Մովսէս Խորենացին՝ Բ հատոր, ԼԱ[100] գլուխ»:

Խորենացու գրքի հատորը և գլուխը այսպես ճշգրիտ կերպով նշելը ցույց է տալիս, թե որքան իրական են «Պատմագիրք հայոց»-ի հեղինակի տեղեկությունները։

Այդպիսի մի տեղեկություն է նաև Բուզանդարանին վերաբերող տվյալը, որից իմանում ենք, որ «Պատմագիրք հայոց»-ի հեղինակի ունեցած ձեռագրերի հավաքածուում Բուզանդարանը բաղկացած է եղել վեց լրիվ դպրություններից։ Այս մասին նա հայտնում է որպես հաստատ իրողություն։ Այսպես. «Բիւզանդ[101], որ զեղեալ իւր պատմէ Հայոց աշխարհիս իբր զմնացորդս նախկին պատմագրաց. հատորս Զ (=վեց)»։ Եթե վեց դպրություններից որևէ մեկը պակաս լիներ՝ ցուցակի հեղինակը կնշեր այդ։ Ինչպես տեսանք, նա Դաշանց թղթի մասին գրում է. «Ի հին օրինակսն ոչ ուրեք գտանի»։ Ավելացնենք նաև Մովսես Խորենացու և Եղիշեի երկերի մասին նրա հայտնած տեղեկությունները։ Այսպես. Եղիշեի Պատմության նրա ունեցած օրինակը թերի է եղել, որից ելնելով նա գրել է. «Եղիշէ վարդապետ, որ է Պատմութիւն նահատակութեան սրբոց Ղեւոնդեանցն և Վարդանանցն։ Թէպէտ և զպատերազմունսն սրբոյն Վարդանայ որ նախ քան զնահատակելն ըստ պատմագրաց՝ այժմ ոչ գտանի ուրեք»:

Խորենացու գրքի կապակցությամբ նա հայտնում է. «Մովսէս Խորենացի. համառօտապատում պատմագիրք, չորս հատոր, սկսեալ յԱդամայ մինչև ի Զենոն կայսրն, որպէս վկայէ Թումաս Արծրունեաց պատմագիրք, բայց այժմ զերիս հատորս միայն եւեթ, իսկ չորրորդն ոչ ուրեք գտանի ի սադրելոյ հերձուածողաց»:

100 Պետք է լինի՝ «ԼԴ» (կամ էլ՝ պետք է ենթադրել, որ «Պատմագիրք հայոց»-ի հեղինակի ունեցած ձեռագրերում Խորենացու Պատմության նշված գլուխը կրել է ԼԱ համարը)։

101 Նկատենք, որ այստեղ նույնպես Բուզանդարանը Փավստոսի անունը չի կրում և ներկայացված է «Բուզանդարան» ընդհանուր վերնագրից բխող «Բիւզանդ» բառով։ «Պատմագիրք Հայոց»-ի հեղինակը մնացած բոլոր դեպքերում պատմիչներին նշում է կրկնակի անուններով (Ղազար Փարպեցի, Մովսես Խորենացի, Անանիա Շիրակացի և այլն)։ Այդպես կնշեր նաև Փավստոս Բուզանդին, եթե սա լիներ ամբողջ Բուզանդարանի հեղինակը։

Այսքանից հետո պարզ է, որ եթե «Պատմագիրք հայոց»-ում նշված Բուզանդարանը վեց դպրություններից բաղկացած չլիներ՝ ցանկում կկարդայինք. «Բիւզանդ, հատորս վեց։ Բայց այժմ չորս հատորս միայն երևի, իսկ նախորդքն ոչ ուրեք գտանին»։

Հեղինակի գործածած «իբր զմնացորդս նախկին պատմագրաց» արտահայտությունը առավել որոշակիությամբ է վկայում Բուզանդարանի վեց դպրությունների մասին, որովհետև միայն մեկ հեղինակի՝ Փավստոսի անունը կրող չորս դպրությունները չէին կարող համարվել «մնացորդք նախկին պատմագրաց»։

Հիշենք Թովմա Արծրունու «մնացորդք պատմագրացն առաջնոց» արտահայտությունը, որով Արծրունին նկատի է ունեցել մի քանի տարբեր պատմիչների[102]։

«Պատմագիրք հայոց» ցանկն ընդօրինակված է 1724 թվականին, Նոր Ջուղայում, Մովսես Ջուղայեցու պատվերով։ Այս փաստի լույսի տակ մեզ շատ հավանական է երևում Ստեփանոս Հարությունյան Տեր-Հովհանյանցի կարծիքն այն մասին, որ ցուցակը հանդիսացել է Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքում պահված ձեռագրերի ցուցակը։ Տեր-Հովհանյանցը «յերթալն յԱսպահան տեսալ է ուրեք ցուցակ մի գրչագիր մատենից, զոր կարծէ լինել Ամենափրկիչ վանաց Նոր-Ջուղայու»[103]։ Որ Ջուղայում ժամանակին գտնված է եղել Բուզանդարանը պարունակող մի հին ձեռագիր՝ երևում է Ջուղայում ընդօրինակված և այժմ Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող № 1862 ձեռագրից։ Սա զանազան մատենագիրների երկերի ժողովածու է, որի 164ա—186բ թերթերի վրա ընդօրինակված են Բուզանդարանից բազմաթիվ գլուխներ։ Ընդօրինակությունը կատարվել է 1641 թվականին։ Վերնագիրն է. «Ի Բուզանդրեան պատմութենէ»։

Մեզ հայտնի են տեղեկություններ Նոր Ջուղայում գտնված և «Պատմագիրք հայոց»-ում նշված նաև մի քանի այլ երկերի մասին։ Այսպես, Գալուստ Շիրմազանյանն իր ունեցած 198 ձեռագրերի[104] շարքում նշում է «Պատմութիւն

102 «Իսկ առ մեզ հասին գրոյցք այս բան մնացորդաց պատմագրացն առաջնոց, ի Մամբրէ վերծանողէ և ի Նորին եղբօրէ Մովսէս կոչեցելոյ և միւսումն Թէոդորոս Քերթող» (Թ. Արծրունի, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 44)։

103 Ն. Ակինյանը («Հ. Ամս.», 1952, էջ 54—55) և ապա մենք («Բանբեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 75—76) նշել ենք, որ բանասերները չնկատելով «Պատմագիրք հայոց»-ի և Տեր-Հովհանյանցի ցուցակի նույնությունը, վերջինս ընկալել են ուղղակի որպես Նոր Ջուղայի ձեռագրերի ցուցակ, այնինչ Տեր-Հովհանյանցի տեսածը «Պատմագիրք հայոց» ցանկն է եղել։ Բայց սա, իհարկե, չի բացառում այն հանգամանքը, որ «Պատմագիրք հայոց»-ի բուն հեղինակը ցանկը կազմած լինի Նոր Ջուղայում գտնված ձեռագրերի հիման վրա և այդ ցանկը հետագայում ընկած լինի Տեր-Հովհանյանցի ձեռքը։

104 Գալուստ Շիրմազանյանի ունեցած ձեռագրերի մասին տեղեկություններ հայտնող գիտնականները (M. Brosset, Notices sur une Collection de matériaux historiques et philologiques, due à M. Ad. Berger,—տպ. „Mélanges asiatiques; Acad. imp. d. sciences de S. P.-bourg, t. IV, 1863, p. 712, նաև՝ t. V, 1865, p. 365. Մեսրոպ եպիսկոպոս, Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, Էջմիածին, 1921, էջ IV։ Ад. Берже, Библиотека Калуста Ширмазаняна, стр. 4. Հ. Ս. Անասյան, Հայկական մատենագիտություն, հ. Ա, էջ LXXXI) ամենուրեք ձեռագրերի քանակը սխալմամբ նշել են 209, 214, 193 կամ 204, չնկատելով, որ ցուցակում նշված համարներից վեցը ներկայացնում են ոչ թե ձեռագրեր, այլ՝ մի տպագիր գիրք և հարյուրավոր կոնդակներ, պարսկական ֆիրմաններ և այլ թղթեր (տե՛ս Մաշտոցի անվան Մատենադարան, արխիվ, կաթ. դիվան, թղթ. 228, վ. 17), որոնք, ի միջի այլոց, հրի ճարակ դարձան։ Միայն մի-երկու ձեռագիր, հրաշքով փրկված, պահվում են մեր Մատենադարանում։

հայոց ի Մովսիսէ Խորենացւոյ, օրինակեալ ի ՌՃԷ (=1658) թուին Հայոց ի Նորն Ջուղայ, ի թագաւորութեանն Շահաբբաս փոքերն»։ Նույն Շիրմազանյանը 1865 թվականից առաջ ուղղել և կարգավորել է Կովկասի կուսակալության պաշտոնյա, գրադարանապետ Ադոլֆ Բերժեից ակադեմիկոս Մ. Բրոսեին անցած մի ձեռագրացուցակ, որտեղ գրանցված են եղել Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքում պահված 208 ձեռագիր։ Այս ցանկում Շապուհ Բագրատունու պատմությունը խորագրված է աղճատված այնպես, ինչպես որ գտնում ենք «Պատմագիրք հայոց»-ում[105]։ Սա որոշակի փաստ է, որը, կարծես թե, կասկած չի թողնում այն մասին, որ «Պատմագիրք հայոց»-ում նշված ձեռագրերը մասն են կազմել Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքում պահված և Ադոլֆ Բերժեի ունեցած ցուցակում գրանցված 208 ձեռագրերի։ Այս ձեռագրերի շարքում է եղել նաև վեց դպրություններից բաղկացած Բուզանդարանը։

Այսպիսով, մի շարք փաստեր ցույց են տալիս, որ XVIII դարում, հավանաբար Նոր Ջուղայում (որտեղ որ ընդօրինակված է «Պատմագիրք հայոց» ցանկը պարունակող № 2271 ձեռագիրը) դեռ գոյություն է ունեցել վեց լրիվ դպրություններից բաղկացած մի Բուզանդարան, որի հիման վրա էլ «Պատմագիրք հայոց»-ի հեղինակը իր ցանկում նշել է. «Բիւզանդ, որ գեղեալ իւս պատմէ Հայոց աշխարհիս իբր զմնացորդս նախկին պատմագրաց, հատորս վեց»։

Վերադառնալով Պրոկոպիոս Կեսարացուն՝ հիշենք, որ նա «Վասն շինութեանց» երկում վերապատմել է Բուզանդարանի առաջին դպրություններում գտնված այն միևնույն գլուխը, որից օգտվել է նաև Հովհան Տարոնացին։ Դա, ինչպես ասվեց, «Ապստամբութիւն Պարթևաց, որ եղև ի յայս ժամանակի» խորագիրը կրող գլուխն է։

Ինչպես որ Ագաթանգեղոսի արձանագրությունը, Մամիկոնյանների զրույցը, Ասողիկի «Տիեզերական պատմությունից» քաղված հատվածն արտագրելուց առաջ Հովհան Տարոնացին անվանապես նշում է իր սկզբնաղբյուրները («Մառեանն Մարաբաս փիլիսոփայի Մծուրնացւոյ», «այսպէս շարագրէ (Ագաթանգեղոսը—Գ. Ա.) զՄամիկոնէիցն սակս ազգացեղութիւնն», «երկրորդեցից ի պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ եւ Ստեփանոսի Տարոնացւոյ»), այնպես էլ Պարթևաց ապստամբության վերաբերող գլուխը Բուզանդարանից քաղելուց առաջ նա հայտնում է. «զսոյն ճառէ ժամանակագիրն (Բուզանդարան ժողովածուն կազմող հեղինակը—Գ. Ա.) այդպէս որպէս առաջիդ կայ»։

Այս խոսքերից անմիջապես հետո նա բերել է իր խոստացած գլխի պատճենը, որը, սակայն, այժմ ընկալվում է որպես նրա սեփական շարադրանք։ Թյուրիմացության նպաստել է, ի շարս մյուս պատճառների, նաև ութ տողանց մի միջանկյալ հատված՝ Մարսյակի հատվածը[106], որը սխալմամբ ընդ-

105 Ա. Բերժեի ունեցած ցուցակում Շապուհի պատմությունը նշված է եղել այսպես. «Շապուհ պատմագիր, որ է պատմութիւն Որմըզգաքրաղայ («Պատմագիրք հայոց»-ի մի օրինակում պահպանվել է ճիշտ ձևը. «Սրբոյն Սմբատայ» և այլոց որոց նահատակաց, որ ի թուին ԴՃԲ» (տե՛ս Շ ա պ ո ւ հ  Բ ա գ ր ա տ ո ւ ն ի, Էջմիածին, 1921, էջ VI)։

106 Տես ՍՆՊ, էջ 7, տողք 14—21։ Ի դեպ՝ այս հատվածում հանդիպող Փառոխ և Փառական, ինչպես նաև Գրիգորի և Տրդատի վարքագիր Ագաթանգեղոսի Պատմության տածել կոչել «դպառականն» և «Փառական Շեմակաց» (Ագաթ. § 211) արտահայտությունների կապակցությամբ հայտնենք հետևյալ նորությունները։ Ագաթանգեղոսի նորահայտ մադրիդյան ձեռագրի բնագրում պառական բառը թարգմանված է κυνηγία (=շներով որս) արտահայտությամբ

օրինակված լինելով պատճենի մասին ազդարարող խոսքերի («զսոյն ճառէ ժամանակագիրն այդպէս որպէս առաջիդ կայ») և նրան անմիջապես հաջորդած բուն պատճենի միջև, ընդհատել է տրամաբանական կապը բնագրում և թույլ չի տվել նկատելու, որ նրանք վերաբերում են իրար և որ «Ապստամբութիւն Պարթևաց, որ եղեւ ի յայս ժամանակի» խորագրով սկսվում է ժամանակագրից քաղված հատվածը։

Մարույակի հատվածի իր տեղում չլինելու փաստը նշել են համարյա բոլոր այն բանասերները (Ք. Պատկանյան[107], Ն. Ջնտոյան[108], Ն. Մառ[109], Ա. Մատիկյան[110], Բ. Սարգիսյան[111], Ն. Ակինյան[112], Ստ. Մալխասյանց[113] և ուրիշներ), որոնք այս կամ այն առիթով գործ են ունեցել այդ հատվածի հետ։

Սիմեոն Ապարանցու ունեցած ձեռագրում Մարույակի հատվածն ընդօրինակված է եղել Սամիկոնյանների զրույցից անմիջապես հետո, իսկ մեզ հասած ձեռագրում (№ 2639) ինչպես տեսանք, այն ընդհատում է ժամանակագրին վերաբերող նախադասության և նրանից քաղված հատվածի կապը։ Պետք է ենթադրել, որ հատվածն սկզբնապես ընդօրինակված է եղել ձեռագրի լուսանցքում և հետագայում իր տեղը կորցնելով, տարբեր գրիչների կողմից դետեղվել է բնագրի տարբեր տեղերում։ Այսպիսի դեպքեր հաճախ են պատահում։ Մաշտոցի անվան Մատենադարանի № 3079 ձեռագրի 257բ էջում, օրի-

(„ὅπως τῇ τῶν κυνηγίων τερπνοτάτῃ θήρᾳ τὰ τῆς λύπης εἰς τερπνότητα μεταβληθῇ", տե՛ս G. Garitte, Documents pour l'étude du Livre d'Agathange, Citta del Vaticano, MCMXLVI, p. 48)։ Սրանով կարծես թե հաստատվում է Աճառյան բառարանի կարծիքն այն մասին, որ «պատականն» նշանակում է «որսի շներ»։ Ինչ վերաբերում է Փառախտ, Փառական, Փառական Շեմակաց անուններին՝ դրանք, ըստ երևույթին, պետք է նույնացնել Փխրում և Փառակա տեղանունների հետ։ Սրանք, Գողթան գավառում գտնված երկու հարևան գյուղերի անուններ են։ Պատմական Հայաստանի քարտեզի վրա ուրիշ ոչ մի տեղ չի կարելի ցույց տալ իրար մոտ գտնվող այսպիսի երկու բնակավայր, որոնք, արդարացնեին հետևյալ արտահայտությունը. «Փառախտ կոչեն զտեղի բնակութեանն և Փառականն դաշտ որսոց և արշաւանաց նոցին» (ՍԵՊ, էջ 7)։ Փառական-ը պահպանել է իր անունը, իսկ Փառախտ-ը ժամանակի ընթացքում ավելի հայկականանալով դարձել է Փխրում, իսկ այժմ ադրբեջանցիները կոչում են Բöւրհöւմ (<Բուհրում<Փուխրում<Փխրում)։ Դեռ հինգերորդ դարում Փառախտն արդեն ուներ մեկ ուրիշ այլափոխված ձև՝ Փառախում։ Մեր նշած բառերի շուրջ առեղծված զանազան կարծիքների մասին տես՝ Հ. Աճառյան, Արմատական բառարան, հատ. Ե, Երևան, 1931, էջ 322, 323, 854, 855 և հատ. Զ, 1932, էջ 1160։

[107] История императора Иракла, С.-Пб., 1862, стр. 173.

[108] Բ. Ջնտոյան, Դատաստան ի վերայ նորընծայոյն և զաստոր նորա—«Բազմավէպ», 1878, էջ 40, ծ. 3։

[109] Н. Я. Марр, О начальной истории Армении, стр. 275. Այստեղ Ն. Մառը բերելով Ն. Ջնտոյանի կարծիքն այն մասին, որ Մարույակի հատվածը «ի տեղի ուրեք յիշատակի» որպես բան «Ղազարայ Փարպեցւոյ, որ յետ ճառելոյ զՃենաց՝ ճառէ և զայս», չի նկատել, որ Ջընտոյանը նկատի է ունեցել Սիմեոն Ապարանցու «Վիպասանութիւնում» գտնվող այն սխալ հիշատակությունը, որի համաձայն «Սեբեոսի Պատմությանը» միացած հատվածը շարադրված է եղել իբր Ղազար Փարպեցու կողմից։

[110] Ա. Մատիկյան, Անանունը կամ կեղծ Սեբեոս, էջ 83, ծան. 2։

[111] Բ. Սարգիսյան, Ս. Ապարանցին և Կեղծ Սեբեոսի առեղծվածը—«Բազմավէպ», 1915, էջ 8։

[112] Ն. Ակինյան, Սեբիոս եպիսկ. Բագրատունեաց, էջ 31։

[113] Ստ. Մալխասյանց, ՍԵՊ, էջ 166, ծան. 13։ Նաև՝ История епископа Себеоса, Ереван, 1939, стр. 138, прим. 17.

նակ, հանդիպում ենք այսպիսի մի հիշատակարանի. «Ով ընթերցող եղբայր, սա չակերտ ոչ ունէր, զտեղն ոչ գիտելով սաստ եդի. այսպէս իմա»: Այստեղ ակնարկվող հատվածը մեկ ուրիշ ձեռագրում ընդօրինակված է բոլորովին մի ուրիշ տեղում (ձ. № 7584, էջ 354ա): Անհետաքրքիր չի լինի հիշել նաև Ստեփանոս Ասողիկի «Տիեզերական պատմությունում» հանդիպող մի ընդմիջարկություն, որը նույնպես տարբեր ձեռագրերում ընդօրինակված է ըստ գրիչների ճաշակի: Նկատի ունենք ՍԵՊ, 124, տողք 22—23 և Ասողիկ, Ս.-Պբուրգ, 1885, էջ 96, տ. 1—4 հատվածը[114], որը մենք Ասողիկի հնագույն ձեռագրում (№ 2865, էջ 168բ) գտնում ենք ընդօրինակված լուսանցքում: Սրանից մի քանի տող հետո (էջ 169ա, տ. 12—15) դարձյալ լուսանցքում հանդիպում ենք մեկ ուրիշ հիշատակագրության այն մասին, որ ընդօրինակության համար հիմք ծառայած ձեռագիրը տվյալ տեղում աղճատված է եղել. «Ծուռ է տեղոյ աւրինակն»: Նույնիսկ այսպիսի մի հիշատակարան թափանցել է բնագրի մեջ և հրատարակվել նրա հետ որպես Ասողիկի խոսք[115]:

Բարեբախտաբար պահպանվել է Ասողիկի Պատմության այն հնագույն ձեռագիրը, որտեղից բխել են թյուրիմացությունները և որի օգնությամբ հնարավոր է դառնում վերականգնել ճշմարտությունը. մի բան, որ չենք կարող ասել Մարույակի հատվածի կապակցությամբ: Հովհան Տարոնացու բնագիրն արդեն ընդօրինակված է աղճատված վիճակում և մեզ մնում է բնագիրը կարգավորել՝ Մարույակի հատվածն իր այժմյան տեղից լոկ բանասիրորեն ազատելու միջոցով:

Հատվածը հեռացնելուց հետո բնագրում կրկին իրար են մոտենում անջատված մասերը և դրանով հնարավորություն են ստեղծում նկատելու, որ Հովհան Տարոնացին ժամանակագրին վկայակոչելուց հետո անմիջապես բերել է նրանից քաղված գլուխը, խորագրի հետ միասին: Այսպիսով մինչև այժմ որպես երկրորդ գլխի վերնագիր ընկալված «Ապստամբութիւն Պարթևաց որ եղև ի յայս ժամանակի» արտահայտությունը պետք է այսուհետև գիտել որպես ժամանակագրից արտագրված բնագրի սկզբի բառեր: Սրանով Հովհան Տարոնացու հատվածում վերանում է Ա և Բ գլուխներն իրարից անջատող խորագիրը և ամբողջ հատվածը կրկին միանում է մի ընդհանուր գլխի մեջ: Այս գլխի նյութն ամբողջապես քաղված է ժամանակագրից, որի անունը ամենայն հավանականությամբ նշված է եղել գլխի խորագրում, ինչպես որ հաջորդ գլխի խորագրում հայտնված է Մովսես Խորենացու և Ստեփանոս Տարոնացու անունները: Հայտնի է, որ Հովհան Տարոնացու հատվածը մեզ հասել է անխորագիր (տպագիր բնագրերի խորագիրը պատկանում է հրատարակիչներին) և չունի իրեն նախորդած և հաջորդած բնագրերը: Ահա այդ կորած մասերում է, մեր կարծիքով, մնացել նաև ժամանակագրի անունը պարունակած խորագիրը:

Իսկ որ «Ապստամբութիւն Պարթևաց, որ եղև ի յայս ժամանակի» խորագիրը պատկանել է ժամանակագրին՝ երևում է նաև այն փաստից, որ այն չի համապատասխանում Հովհան Տարոնացու հատվածում իր տակ գտնվող նյութին: Պարթևաց ապստամբությունից բացի այստեղ միևնույն խորագրի տակ զետեղված է Հայաստանում և Պարսկաստանում հարյուրավոր տարիներ իշխած թագավորների ժամանակագրական ցանկը, որը կապ չունի ապստամ-

114 Այս հատվածի շուրջ ծագած զանազան հարցերի մասին տե՛ս Ասողիկ, էջ 351, ծ. 76:

115 Այս մասին մանրամասն տե՛ս ՍԵՊ, էջ 194, ծան. 66:

*բության հետ և որը Հովհան Տարոնացին Պարթևաց ապստամբության մասին գլուխն արտագրելուց հետո շարունակել է քաղել նույն ժամանակագրից և զետեղել նրանից բերված մյուս նյութերի շարքում։ Բացի այդ. այս ցանկում կարդում ենք. «Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհիս Հայոց ի Մծբին քաղաքի» (ՍԵՊ, էջ 9)։ Հաջորդ գլխում հանդիպում ենք միևնույն դեպքին վերաբերող մի այլ տեղեկության, որի համաձայն Արշակը Հայաստանի թագավոր է կարգել ոչ թե իր* որդի *Արշակ Փոքրին, այլ՝* եղբոր՝ *Վաղարշակին։ Պարզ է, որ միևնույն հեղինակը չէր կարող մի տեղ մի բան հաղորդել, մեկ այլ տեղ՝ մեկ ուրիշ։ Չէր կարող պատահել նաև, որ հեղինակն սկզբում իր հայտնածը հետագայում հերքեր առանց պատճառաբանության։ Մնում է ենթադրել, որ երկու տեղեկությունններն էլ հեղինակի կողմից քաղված են այն տարբեր սկզբնաղբյուրներից, որոնց նա դիմել է իր հավաքածուն կազմելիս։ Իսկ այդ աղբյուրներից մեկի մեջ մտնում են Մ. Խորենացին և Ստ. Տարոնացին, ինչպես որ հայտնվում է բնագրում, իսկ մյուսի մեջ, ինչպես տեսանք, ժամանակագիրը (Բուզանդարանը)։ Ինչքան որ բնական է Արշակ-Վաղարշակ, որդի-եղբայր անհամաձայնությունը երկու տարբեր սկզբնաղբյուրներից կատարված արտագրությունում, նույնքան անտրամաբանական է դա միևնույն հեղինակի մոտ։*

*Մյուս կողմից՝ Սիմեոն Ապարանցու միջոցով իմացանք, որ Մամիկոնյանների զրույցը նույնպես գտնվել է Պարթևաց ապստամբությանը վերաբերող գլխի սահմաններում, այսինքն Բուզանդարանից քաղված հատվածում։*

*Այսպիսով բազմաթիվ փաստեր ցույց են տալիս, որ զրույցի սկզբնաղբյուրը Բուզանդարանն է (կորած դպրությունները) և ոչ՝ «Սեբեոսի Պատմությունը», որին նա միացած է թյուրիմացաբար։*

Г. В. АБГАРЯН

## ДРЕВНЕЙШИЙ ИСТОЧНИК СКАЗА О МАМИКОНЯНАХ

### (К вопросу о не дошедших до нас книгах Бузандарана)

Определение времени записи древнеармянского Сказа о Мамике и Конаке имеет важное источниковедческое значение. В современном арменоведении общепринятым является мнение о том, что Сказ записан впервые историком VII века Себеосом, который якобы услышал Сказ от китайского посла, будучи в резиденции персидского царя Хосрова Парвеза (590—628).

Путем восстановления дефективного текста, служившего причиной недоразумения, и сличения Сказа с некоторыми другими памятниками древнеармянской литературы автор статьи приходит к выводу, что в состав «Истории Себеоса» Сказ включен случайно и что он является армянским преданием, которое первоначально было записано автором утерянных книг Бузандарана (Фавстоса Бузанда).

Одновременно выясняется, что известный нам Сказ исходит не непосредственно из Бузандарана: он находился в виде извлечения из Бузандарана в составе «Истории Баградитов» Иоанна Таронаци (XI в.), от

которой до нас дошел лишь фрагмент, ошибочно присоединенный к «Истории Себеоса».

В исследовании приводятся материалы, свидетельствующие о существовании утерянных книг Бузандарана.

G. V. ABGARIAN

## LA SOURCE LA PLUS ANCIENNE DE LA LEGENDE DES MAMIKONIENS

**(A propos des livres du «Buzandaran» non parvenus jusqu'à nous)**

La détermination de la date de l'écriture de l'ancienne légende arménienne de Mamik et de Konak a une grande importance scientifique. On pense aujourd'hui dans les Etudes arméniennes que cette légende fur originairement écrite par Sébéos, historien du VII$^{e}$ siècle, qui l'aurait recueillie d'un ambassadeur chinois à la cour du roi de Perse Khosroès Parvèze (590—628).

L'auteur qui restitue le texte défectueux, cause de méprises, et le collationne à d'autres monuments littéraires arméniens anciens, conclut que la légende fut incluse dans „l'Histoire de Sébéos" fortuitement, et qu'elle est une tradition arménienne transcrite à l'origine par l'auteur des livres perdus du „Buzandaran" (Fauste de Byzance).

On nous montre en même temps que cette légende ne provient pas directement du „Buzandaran" mais qu'elle s'est trouvée, sous forme de citation tirée du „Buzandaran", dans le corps de „l'Histoire des Bagradites" de Jean de Taron (XI$^{e}$ siècle), ouvrage dont ne nous est parvenu qu'un seul fragment rajouté par erreur à „l'Histoire de Sébéos".

L'étude renferme des matériaux attestant l'existence des livres perdus du „Buzandaran".